1916 № 44.—Հոկտեմբերի 30

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4** ռուբլի, **կէս տարուան 2** ր. **50** կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ **տարեկան 3** ր., **կէս տարուան 2** ր.։ Արտասահման՝ **տարեկան 5** ր., **կէս տարուան 3** ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաարադեան հրապար. № 7. **Հեռախօս № 29.**

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին **10** կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների աւթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

*ԽՄԲԱԳՐԱԿԱՆ.—Անգլիա և Հայերը.—ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ. — ՆԵՐՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ. — Կովկասեան բանակի սպայակոյտի կողմից.—Պատերազմն և փոքր ազգերը, Ա. Սաֆրաստեանի.—Սովից տառապող աշակերտութիւնը Յ. Տէր-Միքայէլեանի.—Հայր Ղուկասեանի յիշատակին Գ. Ենգ-ի.—Գաղթականական գործերը (Լեռնաբնակ Մոականցիք) Վ. Յոխիկեանի.—ԳԱՒԱՌ.—Դիլիջան.—Նուխի.—ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ։—Կ. Հ. Բ. Ընկերութիւն, Հ. Կ. Կոմիտէի և Պետ. Նը-պատմներով պահուող պարենաւորման բաժանմունք.—ՔՐՈՆԻԿՈՆ.—ԱՐՏԱՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—ՏԱՃԿԱՀԱՅԵՐ.—*All Armenia*—Հայաստանին Գ. Լեոնեանի.—Ուսուցիչների գոյամարտը. Կ. Երիցեանի.—ԳԵՂԱՐՈՒԵՍՏ.—Անվերադարձ. Ազատ-Վշտունի.—ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ.—Հին Մեղուորը Քամալեանց Ս.-ի.—ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ.—«Փնջիկ» (Ա. Մանուկեանի) Ովս. Տէր-Գրիգորեանի.—ԹԱՏՐՈՆ.—ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ։*

## ԱՆԳԼԻԱ ԵՒ ՀԱՅԵՐԸ

Լորդ Մէյրի հայ փախստականների ֆոնդի կոմիտէն սկսել է բուռն գործունէութիւն։ Վերապատուելի Հարոլդ Բըկստոնի նախագահութեամբ Կովկասում անցեալ գարնան գործող կոմիտէն արդէն հրատարակել է իր տեղեկագիրը, առանձնապէս վեր հանելով Երևանի մէջ գործող փախստականական մարմինների և Հայկ. կենտրոնական կոմիտէի գործունէութիւնը։

Ֆոնդի կոմիտէն կազմակերպել է մի շարք դասախօսութիւններ Անգլիոյ զանազան կողմերում։ Տեղին վրայ առնուած լուսանկարներից պատրաստած են մոգական լապտերի ապակիներ, որոնք մեծ դիւրութիւն են տալիս հարցերի լուսաբանման և դասախօսութիւնները հետաքրքրական դարձնում։ Հարոլդ Բըկստոնը, Ջորջ Հաճկին և Արշակ Սաֆրաստեան արդէն տուել են զանազան զեկոյցներ թէ կոմիտէների համար և թէ հրապարակային դասախօսութիւններ։ Պ. Լէվին Ուիլիըմս շրջում է Անգլիոյ զանազան կողմերը և դասախօսութիւններ է անում։ Պարլամենտական Նոյէլ Բըկստոն հրաւիրուած է խօսելու Լոնդոնի կանանց յայտնի Lyceum ակմբանոցում (կլուբում) Հայաստանի աշխարհագրութեան մասին։

Վերջերս հրատարակուել են զանազան գրքեր հայերի անցեալի և ներկայի մասին։

Պարլամենտն արդէն բացուել է մի քանի օր առաջ։ Ինչպէս անցեալ օգոստոսին արտաքին գործերի նախարարութեան խորհրդական Լորդ Ռոբերտ Սեսիլը խոստացել էր, շուտով Պարլամենտին ներկայացուելու է Լորդ Բրայսի և պ. Արնոլդ Դոյնբիի կողմից պատրաստուած հայկական սարսափների վաւերագրերը բովանդակող հատորը։

Նոյնչափ եռանդուն գործունէութիւն է ցոյց տալիս նաև Լոնդոնի «Հայկական Կարմիր Խաչի և փախստականների ֆոնդը»։ կազմակերպիչ օր. Ռոպինսոն եզական ջանքերից յետոյ Մանչէստըր քաղաքում և շրջակայքում կազմակերպել է «Հայկական դրօշակի օրը» (Armenian flag day)։ Հոկտեմբերի 13—14-ի երկու օրուայ ընթացքում 4,000-ից աւելի հայուհիներ, անգլուհիներ և բելջուհիներ քաղաքում պիտի ծախեն հայոց դրօշակներ, հաւաքելով դրամ ի նպաստ հայ փախստականների։ Սպասւում է մեծ արդիւնք և մեծ ժողովրդականութիւն։ Խմբագրութեանս ուղարկուած է մի դրօշակ և գունաւոր գեղեցիկ թուղթի վրայ տպագրուած կոչեր ի նպաստ Հայաստանի։

Բազմաչարչար և չարատանջ հայ ժողովուրդը անշուշտ օրհնութեամբ և երախտագիտութեամբ կը յիշի

իւր անկեղծ բարեկամներին, որոնց թիւը ոչ միայն Անգլիայում, այլև Ամերիկայում, Ֆրանսիայում, Իտալիայում և Ռուսաստանում բարեբախտաբար բազմանում է, երբ տանջանքի բովից դուրս գալով մի օր ազատ շունչ քաշել կարողանայ։

# Համաշխարհային պատերազմը

*Արևմտեան ճակատ.*—Կռիւները շարունակւում են ամբողջ ճակատում, մեծ մասամբ հրացանաձգութիւն և հետախուզութիւններ։ Կատաղի կռիւներ տեղի ունեն գլխաւորապէս Լիպիցա և Դոլնայի շրջանում և անտառապատ Կարպատներում։ Լիպիցայի մօտ թշնամին յամառ կերպով աշխատում է մեր զօրքից խլել և բարձրունքների տիրել, որ յետոյ իւր հետևեալ գործողութիւնները և առաջխաղացումը դիւրանան, բայց հրացանային և թընդանօթային սաստիկ կրակով յետ է մղւում։ Այդ շրջանում թշնամուն յաջողուել է գրաւել առաջապահ խրամատների միայն մի մասը։ Լամտնեյա լեռից հարաւ մեր զօրքերը խլեցին հակառակորդից մի շարք բարձրունքներ և առան բաւականին գերիներ և ռազմամթերք։

Կիրլիբաբայից դէպի արևելք մեր գնդի մի վաշտը յարձակուեց թշնամու վրայ, նուաճեց նրա խրամատները և գերի վարեց շատերին։

*Արևելեան ճակատ.*—Անգլօ-ֆրանսական զօրքերը առաջ են խաղում յաջողութեամբ։ Գերմանացիներից յետ են խլուած Վերդէնի շրջանում երկու ամրոցներ՝ Դուոմոն և Վօ։ Դուոմոնի շրջանում գերմանացիները տուել են 6000 գերիներ, 15 թնդանօթ և 144 գնդացիր։ Այս պարտութիւնը ճնշող տպաւորութիւն է արել բոլոր Գերմանիայում, մանաւանդ Բերլինում։ Կառավարութիւնն աշխատում է թուլացնել այդ տպաւորութիւնը, բացատրելով, թէ վաղօրօք ֆրանսացիներից մնացած ամրոցները պայթեցրել է։ Այդ ճակատում գլխաւոր հրամանատարը թագաժառանգն է. նրա դէմ մեծ դժգոհութիւն կայ. խօսւում է, որ նա յետ կըկանչուի և տեղը ուրիշ հրամանատար կը նշանակուի։

*Ռումանական ճակատ.*—Գերմանիան և Աւստրօ-Հունգարիան իրենց ուշադրութիւնը և ոյժերը կենտրոնացրել են այժմ գլխաւորապէս Ռումանիայի վրայ. նրանք ձգնում են այնպէս պատժել Ռումանիային, որ օրինակ լինի միւս չէզոք մնացած պետութիւններին, որ սրանք դաշնակիցների կողմն անցնելու մասին մինչև անգամ մտածել չը կարողանան։ Մակենզէնը Դոբրուջայի կողմից, իսկ Ֆալկէնհէյմը Տրանսիլվանիայի կողմից աշխատում են սեղմել Ռումանիային և դրսից գալիք օգնութեան ճանապարհը կտրել։ Նրանց առաջխաղացումն ժամանակաւորապէս թուլացել է, սպասում են նոր ոյժերի։

Վերջին շաբաթուայ կատարուած պատերազմական գործողութիւններն են.

*Տրանսիլվանիա*—Պրեդէալի ուղղութեան վրայ, յամառ ու երկարատև կռիւներից յետոյ, ռումանները ստիպուեցին քիչ հարաւ նահանջել։ Լիրեշտի շրջանում, Տիր-Դուլուի գետահովտում, հակառակորդի բոլոր ներգործական փորձերը յետ մղուեցին։ Ժիու գետահովտում ռումանները շարունակում են հակառակորդին յետ մղել դէպի հիւսիս։

Օլթի գետահովտում հակառակորդի յարձակման փորձերը կասեցուեցին հրետանու կրակով։ Ժիուի ուղղութեան վրայ ռումանների ճնշման տակ հակառակորդը շարունակում է նահանջել դէպի հիւսիս։ Այստեղ խլուած են 4 թնդանօթ, գերիներ և բաւականաչափ աւար։

*Դոբրուջայի* շրջանում տեղի են ունենում առաջապահ զօրամասերի գործողութիւններ։

*Ժիու* գետի հովտում հակառակորդն, օգնութիւն ստանալով, յառաջ խաղաց։

*Կովկասեան ճակատ.*—Այս ճակատում կռիւները շարունակւում են անդադար։ Թշնամին մեծ ոյժերով գրաւեց Բիջարն և Բեակլին, որը Բիջայից հիւսիս-արևելք է։ Թիւրքերի յարձակումը Սուլթանաբաղի վրայ յետ մղուեց։

Օղնուտից հարաւ թիւրքերը յարձակուեցին Քղի-Կոշտար և Գուլդար և Մոտկանի շրջանում, բայց յետ մղուեցին մեր ուժեղ կրակով ու սուիններով, և դիմեցին փախուստի։ Կեաշկերտից հարաւ-արևմուտք մեր զօրքերը յետ մղեցին թիւրքերին և գրաւեցին Այմուր գիւղը։

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

*Լեհաստանի թագաւորութեան վերականգնումը.*

Վիէննայից հաղորդում են Ստոկհոլմ, որ Աւստրիոյ կայսր Ֆրանց-Յովսէփը ուղղել է Աւստրիայի մինիստր-նախագահին հետևեալ հրովարտակը. «Իմ և գերմանական կայսրի միջև կայացած համաձայնութեամբ, Ռուսաստանի իշխանութիւնից մեր զօրքերով խլուած լեհական գաւառներից պիտի կազմուի մի անկախ պետութիւն—ժառանգական միապետութիւն՝ սահմանադրական վարչակարգով։ Գալիցիան ներկայ պատերազմի ժամանակ պէտք է մեծ զոհեր կրէր, ինչ որ նրան ապահովեց իմ հայրական ամենաջերմ խնամատարութիւնը։ Ըստ այսմ իմ ցանկութիւնն է, որ ներկայումս, երբ ռուսական նահանգներից նոր պետութիւն է կազմւում, Գալիցիային շնորհուի տեղական ինքնավարութեան իրաւունք՝ այն ծաւալով, որ պատշաճաւոր է նրա աւստրիական միապետութեան պատկանելուն։ Այս վերջինի ամբողջութեամբ ու բարգաւաճմամբ Գալիցիայի ազգաբնակութիւնն ապահովուած կը գտնէ իր ազգային ու անտեսական զարգացումը»։—Կայսրը Կերբերին յանձնարարում է մշակել համապատասխան նախագծեր՝ իր կամքի օրէնքով իրագործման համար։

Այս հրովարտակի հրատարակութիւնը մի նոր միջոց է լեհ ռազմիկ ոյժերից օգտուելու։

Գերմանիայի և Աւստրիայի կողմից չէ նկատւում անկեղծութիւն, որովհետև հրովարտակը վերաբերում է Լեհաստանի այն մասին, որը պատկանում էր Ռուսաստանին և միայն պատերազմի ժամանակն է անցել Գերմանիայի ձեռքը, որով դեռ չէ որոշւում նրա վերջնական վիճակը։ Լեհաստանի միւս երկու խոշոր մասերին, որոնք Գերմանիայի և Աւստրիայի սահմաններում են գտնւում, հրովարտակը չէ վերաբերում։

Հռոմից հեռագրում են Պետրոգրադի լրագրերին.—Աւստրիոյ կայսրը վճռեց համաձայնելու, որ Բաւարիոյ գահիշխան (պրինց) Լէօպոլդը նշանակուի Լեհաստանի թագաւոր։ Բաւարացոց թագաւոր Լիւդովի կոմսը մեկնեց Վարշաւա, որ ներկայ լինի թագադրութեան։

## ԲՐԻԱՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ ՍԵՆԱՏՈՐ ՄԱՐՏԷՆԻ ՆԱՄԱԿԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

Բրիանը ի պատասխան սենատոր Մարտէնի նամակին՝ հայերին հալածելու առիթով գրում է.

«Կառավարութիւնը իր պարտականութիւնը համարեց հրապարակով խայտառակութեան սիւնին գամել երիտասարդ թիւրքերի ոճիրը և հասարակական խղճմտանքի դատաստանին յանձնել նրանց հրէշաւոր մտադրութիւնը՝ մի ամբողջ ցեղ բնաջնջելու, մի ցեղ, որ յանցաւոր է նրանց աչքին առաջադիմութեանը և քաղաքակրթութեանը սոսկ նուիրուած լինելով։ Ֆրանսիոյ և չէզոք պետութիւնների ներկայացուցիչներին հաղորդուած են հայկական գործերին վերաբերեալ վաւերագրերը։

Բրիանը յոյս ունի, որ ի պատիւ մարդկութեան, մի քանի չէզոք մեծ պետութիւնների բողոքը հասնելով մինչև Կ. Պոլիս

կը նպաստէ հայերին բնաջնջելու նոր փորձերից զերծ պահելուն։

Ֆրանսական կառավարութիւնը, որ իր նաւատորմով 5000-ից աւելի հայ փախստականներ ազատեց, պաշտօնապէս յայտնեց Բ. Դրան, որ դաշնակիցները ճանաչում են հայերի կոտորածներին մեղսակից օսմանեան կառավարութեան անդամներին և նրա գործակալներին անձնապէս պատասխանատու կատարուած յանցանքների համար։

**Երբ կը հնչի օրինական հատուցման ժամը, դաշնակիցները կիրագործեն Հայաստանի ազգային ձգտումները եւ կապահովեն նրա գոյութիւնը, առաջադիմութիւնը եւ խաղաղութիւնը։**

# Ներքին տեսութիւն

## ԿՈՎԿԱՍԵԱՆ ԲԱՆԱԿԻ ՍՊԱՅԱԿՈՅՏԻ (ՇՏԱԲԻ) ԿՈՂՄԻՑ

Անցեալ յուլիս ամսին Վանի շրջանում տեղի ունեցան անցքեր, որոնք խուճապ առաջացրին, և որի հետեւանքն եղաւ, որ բնակչութիւնը թողեց իր տեղերն և գիմեց Երեւանի նահանգի սահմանները։ Այդ անցքերի վերաբերմամբ կատարուած առանձին քննութիւնը պարզեց հարցափորձի, գիտողութեանց և փաստագրերի ուսումնասիրութեամբ հետեւեալը.

Վանի շրջանի հարաւային մասը և Վան քաղաքը պարպելու մասին հրաման կամ կարգադրութիւն պատշաճաւոր իշխանութիւնների կողմից չի տրուել, այդ բանի հարկ էլ չէր տեսնուած, որովհետև Վան քաղաքին անմիջական վտանգ չէր սպառնում։

Բնակիչների ինքնակամ փախուստը սկսուել և սաստկանում էր այն չափով, որ չափով որ տարածւում էին լուրերը. շուտով այդ շարժումն ընդգրկեց Վանի շրջանը և խուճապի բնոյթ ստացաւ։

Զգելով իրենց դաշտերն անհունձ և թողնելով գոյքը բախտի քմահաճոյքին, փախստականների հոսանքն ուղղուեց դէպի Երեւանի նահանգի սահմանները։

Նոյնը տեղի ունեցաւ նաև Վան քաղաքում, ուր օգոստոսի սկզբին, բացի սակաւաթիւ, երեսուն հոգուց, բոլոր կազմակերպութիւններն ու ամբողջ բնակչութիւնը, թողնելով պահեստներն ու պաշարները, շարժուեցին դէպի Կովկասի սահմանները։

Այսպիսով, եթէ նոյնիսկ ցանկութիւն լինէր, մարդ չէր մնացել Վանից հեռացնելու։

Բնակիչներից ոմանք խոհեմութիւն համարեցին յետ դառնալ ճանապարհից իրենց տեղերը։ Նոր խուճապից խուսափելու համար, օգոստոսի 7-ին տրուած մի հրաման, որով սահման էր որոշւում ռազմական գծերից մի հանգոյց (переходъ) հեռու, որից դէպի հարաւ բնակիչների վերադարձը չէր թոյլատրւում։

Բայց որպէս զի չփչանար այգիների և բանջարանոցների բերքը, վերջիններս խնամելու համար օգոստոսի 8-ին տէրերին թոյլ էր տրուած վերադառնալ նաև արգելուած շրջանը, բայց առանց կանանց ու երեխաների և այն պայմանով, որ վերադարձողները վարչութիւնից (ադմինիստրացիայից) վկայական ունենային, թէ սրանք իսկապէս այգիներ կամ բանջարանոցներ ունին արգելուած շրջանում։

Օգոստոսի 11-ին հնարաւոր եղաւ և այդ արգելքն վերացնելու, որի մասին նոյն օրը պարտուպատշաճ կարգադրութիւններ եղան։

Փախած բնակչութեան դաշտերն ու գոյքը ձգուած էին երեսի վրայ. այդ բոլոր շրջանն ընդարձակ տարածութեան վրայ կողոպտելուց զերծ պահելու հնար չկար, թէև կողոպտիչների դէմ վճռական միջոցներ էին ձեռք առնւում. բռնուած կողոպտիչները յանձնւում էին դաշտային դատարանի և պատժւում էին օրէնքի ամենայն խստութեամբ, ենթարկուելով մահապատժի։

Վկաների ցուցմունքները հաստատում են, որ մինչև իսկ դէպքեր են եղել, երբ երեսի վրայ ձգուած գոյքերը համշիրակներ, որոնք միւսներից վաղ են եղել վերադարձած լքուած տեղերը և որոնք իրենց արարքը բացատրում են այնու, թէ՝ եթէ մէկը չվերցնէր, միւսը կը վերցնէր, ուստի և այդ բանը յանցանք չեն համարում։

Իրողութիւններն աղաւաղողները, ինչպէս և անցած անցքերին միտումնաւոր և գիտաւորեալ սուտ լուսաբանութիւն տուողները կը կրեն հարկաւոր պատիժը։

---

Լոնդոն, 1-ն հոկտ. 1916

## ✓ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԵՒ ՓՈՔՐ ԱԶԳԵՐԸ

Աւելի քան երկու տարուան ահաւոր բաղխումներից յետոյ դէթ դաշնակից պետութիւնների քով դեռ ոչ մի տրամադրութիւն չի երեւում մտածել խաղաղութեան բանակցութեանց մասին։ Այս երկու տարուան ընթացքին, երբ Եւրոպա և Մօտաւոր Արեւելքը զոհած են աւելի քան 5 միլիոն երիտասարդ կեանքեր (չհաշուելով այդ թուի եռապատիկը ծանր կամ թեթև վիրաւորներ և քաղաքացի անմեղ զոհեր), երբ քաղաքակիրթ մարդկութեան կենսունակ տարրը հալւում է պատերազմի հնոցին մէջ և ամբողջ երկիրներ և գաւառներ կամայանան իրենց բնիկ բնակչութիւնէն, դաշնակիցները դեռ նոր պատրաստուած կը յայտարարեն իրենց սկսելու յաղթական պատերազմը։ Անգլիոյ պատերազմական նախարար պ. Լորդ Ջորջ զուցէ ճշմարտապէս ներկայացրեց դաշնակից պետութեանց կարծիքը և համոզումը, երբ մի քանի օր առաջ Ամերիկեան Հեռագրական գործակալութեան Լոնդոնի ներկայացուցչին վճռական կերպով յայտարարեց, որ դաշնակիցները ներկայ բոպէին չէզոք պետութեանց կողմից ձեռնարկուելիք միջնորդութեան ռևէ փորձ պիտի նկատեն իբրև ոչ-չէզոք մի միջամտութիւն և ուրեմն ոչ-բարեկամական մի քայլ հանդէպ դաշնակիցներին, որոնք հազիւ պատրաստուած արդէն սկսած են Գերմանիոյ և դաշնակիցներին իջեցնել մահացու հարուածը։ Այդ ի հարկէ մի վճռական պատասխան էր ուղղուած Գերմանիոյ, որ վերջերս զգալով իր դժուար դրութիւնը երեւի փորձեր էր արել յորդորել ու Ամերիկային, Վատիկանին, Սպանիոյ և այլոց միջնորդել պատերազմիկ կողմերի միջև հաշտութեան ռևէ եզր գտնելու նպատակով։ Զուցէ հեռագիրը արդէն ձեզ հաղորդած է Լորդ Ջորջի տեսակցութեան գլխաւոր մտքերը։ Զուցէ և ձեզ ծանօթ է որ սեպտեմբերի կէսին գերմանական Ռայխստագի աշնանային նիստի բացման առթիւ պետական քարտուղար պ. Բէթման Հոլվէգ արաւ մի նշանակալից յայտարարութիւն։ Հակառակ պատերազմի սկիզբից մինչև անցեալ մայիս զանազան առիթներով իր տուած բոցաշունց ճառերին և անհաշտելի պայմաններին՝ Բէթման Հոլվէգ այս անգամ յայտարարեց ի լուր աշխարհի, որ Գերմանիան պատրաստ է մտնելու հաշտութեան բանակցութիւնների և ապահովելու մի խաղաղութիւն, որ երաշխաւորէ փոքր ազգերի խաղաղ և անկաշկանդ զարգացումը։

Այդ արդէն մի մեծ զիջողութիւն է Գերմանիոյ կողմից կատարուած այն պետական քարտուղարի բերնով, որ դեռ անցեալ մայիսին հրաւիրում էր աշխարհը մի լաւ ուսումնասիրելու պատերազմի քարտէզը—այն է՝ գերմանական գրաւումները դաշնակից երկիրների մէջ։

Գերմանական այդ առաջադրութիւններին է, որ Լորդ Ջորջը պատասխանեց ռազմատենչ, բայց համեմատաբար վայրագ ոճով այս աշխարհաւասան պատերազմը նմանցնելով մի մարմնամարզական գրօսանքի, որի որսորդական շները—այն է Անգլիացոց զինուորները—այժմ առիթ ունեն ցոյց տալու իրենց ցեղի առաքինութիւնները։ Եւ նրանք դաշնակիցների հետ պէտք է շարունակեն մրցումը մինչև որ Գերմանիա անվերականգնելի կրէ մա-

կատար առանց չէզոք պետութեան և առանձնապէս առանց Ամերիկայի գործակցութեան։ (Խաղաղութիւնը պահպանելու նպատակով կազմուած զանազան միջազգային դաշնակցութիւնների առթիւ կը գրեմ ուրիշ անգամ)։ Լորդ Բրայսը կոչ կարդաց բոլոր եկեղեցիներին և խաղաղասիրական մարմիններին՝ ներկայացնել այդ հայեացքները Անգլ. ազգին, պարզել զանգուածներին ապագայ խաղաղութեան պահպանման այդ պայմանները, և այդ կերպով հեռացնել մարդկութեան և Եւրոպայի գլխին յարատև կախուած այդ մռայլ ամպը։

Բովանդակ Անգլիական մամուլը լայնօրէն արձանագրեց Լորդ Բրայսի ճառը. բոլոր թերթերը գրեցին խմբագրականներ Լորդ Բրայսի յանձնարարութիւնների վերաբերմամբ։ Պահպանողական կարևոր թերթերը, ինչպէս «Morning Post», «Daily Telegraph» և այլն անժամանակ և վաղաժամ են համարում խօսել հաշտութեան պայմանների մասին, իսկ Ազատական մամուլը ողջունեց Լորդ Բրայսի առաջարկները իբրև հիմունքներ ապագայի տևական խաղաղութեան։

*Արշակ Սաֆրաստեան*

## ՍՈՎԻՑ ՏԱՌԱՊՈՂ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԻՒՆԸ

Յայտնի է, որ մեր ոչ միայն ծխական, այլ և միջնակարգ դպրոցներում ուսանում են աննշան բացառութեամբ չքաւոր կամ աղքատի խիստ չափաւոր միջոցներ ունեցող երեխաներ։ Պատերազմից առաջ նրանցից շատ շատերը, եթէ զուրկ էին կերակրից, գոնէ հաց ու պանրով, թէյով մի կերպ պահպանում էին իրենց ֆիզիքական գոյութիւնը, իսկ հիմա պանրից բոլորովին զրկուեցին, հացը թանգ ու թթու և դառն ու հում, շաքարն այնքան սուղ։ Միջին Փողոցի ձրի ճաշարանը փակ է, Կ. Հ. Բարեգ. Ընկերութիւնը կենսամթերքների թանգութեան պատճառով ձրի ճաշողների թիւը խիստ սահմանափակեց, վճարը կրկնակի դարձրեց։ Այս Ընկերութիւնը բազմաթիւ դիմումներին չկարողանալով գոհացում տալ, վերջին օրերս երկու անգամ հրաւիրեց մեր դըպրոցների հոգաբարձական և ապա նաև ուսուցչական մարմինների ներկայացուցիչներին՝ խորհրդակցելու նիւթական միջոցներ ձեռք բերելու մասին, սակայն հետևանքի չհասան։ Մասնակցութիւնը թոյլ էր եղել. զանազան առաջարկութիւններ արել ցրուել էին։ Ներկայումս ամենից նպատակայարմարն է միօրեայ հանգանակութիւնը քաղաքումս։ Ժողովրդի ձեռքը փող կայ, ոչ ոք չի խընայիլ։

Թող գիտենայ հայ հասարակութիւնը, որ հարիւրների, գուցէ հազարի հասնի կարօտ աշակերտ-աշակերտուհիների թիւը, որ քաղցած դպրոց է գալիս, քաղցած գնում, շատ անգամ արտասուքն աչքերին նախաճաշիկ խնդրելով։ Նրանց ուսուցիչ-ուսուցչուհիների համար շատ ծանր է այն գիտակցութիւնը, որ սովից տառապող երեխաներին ուսում տալը ակամայ յանցագործութիւն է դառնում։ Հացի խնդիրը շատ ծանր մտահոգութիւն է պատճառում։ Առաջ, օր. Յովնանեան դպրոցը, մինչև 60 հոգու տաք կերակուր էր տալիս, այժմ հազիւ 30-ի, Կ. Հ. Բ. Ընկերութեան և ձրի ճաշարաններում աշակերտուհիներից մինչև 25 հոգի ձրի ճաշ էին ստանում, այժմ միայն հինգը, այն ինչ քաղցածների թիւը չափազանց աւելացել է։ Չքաւորների ստուար քանակով ծանրաբեռնուած միջնակարգ դպրոցի դրութիւնն աւելի ևս ծանր է լինում։ Հասունութեան սահմաններին մօտեցող պատանիները կանոնաւոր սննդառութեան պահանջ են զգում, մինչդեռ ծանր զրկանքներ կրելով սակաւարիւն են դառնում, իսկ շատերը թոքախտի ճիրանների մէջ ընկնում։ Բժիշկը տեսնում է, որ պէտք է երկաթ տալ սակաւարիւններին, բայց ինչ օգուտ, երբ հիւանդը սնունդից զուրկ է։ Եւ այս օրիորդներից շատերը պիտի գործեն դպրոցական փշալից ասպարէզում այսպիսի առողջութեամբ։

Թող կազմակերպուի միօրեայ հանգանակութիւն յօգուտ սովից տառապող աշակերտութեան. հասարակութիւնը չի զլանայ իր աջակցութիւնը այս աղաղակող կարիքը գէթ սակաւ ինչ թեթևացնելու համար։

*Յ. Տէր-Միրաքեան*

## † ՀԱՅՐ ՂՈՒԿԱՍԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

*Եւ հաւատարիմ իւր կոչման մեռաւ*
*Սուրբ ճշմարտութեան անբիծ նահատակ,*
*Իսկ սիրոյ նշանն անմահ դրոշմուեցաւ*
*Շատերի սրտում մէկի փոխանակ…*
*Յով. Յովհաննիսեան*

Մարեցաւ հայի լուսաւորութեան մի ճրագ ևս, մեռաւ հին սերունդի համեստ գործիչներից և արդիւնաւոր մշակներից մէկը։ Աշխարհական Հայրապետ Ղուկասեանը հանգուցեալ Գէորգ Զորրորդ Կաթողիկոսի օրօք առաջ եկած ուսուցչական այն խմբին էր պատկանում, որ անձնուէր գիտակցութեամբ և լի հաւատով սկսեց դպրոցներ բանալ, գիր ու գիրք տարածել մեր երկրի խուլ անկիւններում։ Եօթանասնական թուականների սկզբից հանգուցեալ Տէր-Գարեգինը (Հայրապետ Ղուկասեան) սկսեց իւր ուսուցչութիւնը և երկար ժամանակ Ալէքսանդրապոլ, Էջմիածին, Բագու և այլ տեղերում զարմանալի տոկունութեամբ և համբերատարութեամբ կրում էր հայ ուսուցչի ծանր խաչը, որ ուրախութեամբ և պատուով էր տանում։ Այդ քաղցր լուծը չէր, որ կտրեց նրա կեանքի թելը, այլ ճակատագրի անողոք հարուածներն էին այս առաքինի մարդուն սպանողը։ Սիրող հայրը, որ իւր հոգու խորին քնքշութեամբ սիրում էր որդիներին՝ կարճ ժամանակի մէջ զրկուեց երեք որդիներից։ Ներկայ օրերում, երբ ժամանակակից ուսուցչութիւնը կորցնում է նախկին ռոմանտիկ ոգևորութիւնը և դառնում է փեշակաւոր, Հայր Գարեգնի պէս գաղափարական ուսուցչի և քահանայի դէմքը ուսանելի օրինակ պիտի լինի երիտասարդ սերունդի համար։

Հանգուցեալի գլխաւոր յատկանիշն էր՝ պարտքի խորին գիտակցութիւն և վերին աստիճանի համեստութիւնը, որ վեհութեան էր հասնում։ Բագուեայ հայ հասարակութիւնը իւր ինքնագիտակցութեան և պարտաճանաչութեան չափը ապացուցած կը լինի, եթէ Հայր Գարեգին քահանայի յիշատակը յաւերժացնելու նախաձեռնութեան յանձն առնի և բացի այս մտածի նրա ընտանիքը ապահովեցնելու մասին։

*Գ. Ենգ.*

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

### ԼԵՌՆԱԲՆԱԿ ՄՕՏԿԱՆՑԻՔ

Բաղէշում, դրամական զոհողութիւններով ազատուած հազար անձի չափ լեռնաբնակ Մօտկանցիք ներկայիս ծայր աստիճան չքաւոր են։ Նրանք, Բաղէշից դուրս գալուց մինչև օրս, գըրեթէ սնունդ, նպաստ և հագուստեղէն չեն ստացել։ Հանգստեան կայան չունին և կիսամերկ սոված թափառում են Ալաշկերտի և Իգդիրի գիւղերը ու մուրացկանութեամբ պարապում։

Լեռնցի Մօտկանցու կենցաղավարութիւնը դեռ կիսավայրենի է. անհրաժեշտ է՝ նրանց երեխաների ուսման հոգ տանել։ Մեր ազգային մարմինների ուշադրութիւնն ենք հրաւիրում այս հանգամանքների վրայ։

20 հոկտ. 1916 Վաղարշակ Ցոխիկեան

Իգդիր

## ԳԱՒԱՌ

### ԳԵՆԵՐԱԼ Վ. Մ. ԹԱՄԱՄՇԵԱՆԻ ԱՅՑԸ

ԴԻԼԻՋԱՆ, 18 հոկտեմբերի.—Գաղթականների գործերի պետական գլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեանը երէկ Մեծ Ղարաքիլիսայից եկաւ տեղս իր օգնական բժիշկ Ա. Ց. Նեֆտոնովի և Հ. Կ. Կոմիտէի նախագահ պ. Մ. Յարութիւնեանի հետ։

Գեներալ Թամամշեանի նպատակն էր այցելել Ղարաքիլիսայի գաղթականական հիմնարկութիւնները, այն է՝ որբանոցները, դպրոցները, հիւանդանոցները և պահեստները։ Ղարաքիլիսայում նա այցելել էր Մոսկուայի Կոմիտէի և տիկ. Ի. Թայիրեանի որբանոցները և Քաղաքների Միութեան գաղթականական հիւանդանոցը, իսկ Դիլիջանում երկու օր դիտեց տեղական 16 որբանոցը և հիւանդանոցը՝ ամեն տեղ մանրամասն հարց ու փորձ անելով որբերի դրութեան, կեանքի և կրթութեան մասին։ Գեներալի ուշադրութիւնը ամենից շատ գրաւեցին կար ու ձևի արհեստանոցը և չուստերի արհեստանոցը, ուր սովորող տղաներից մի քանիսը արդէն դարձել են վարպետի օգնականներ։

Իսկ նոր բացուած Վիէննայի տեսակի կարասիքի գործարանը աւելի մեծ ուշադրութեան արժանացաւ։ Գործարանը արդէն բացուած է և գործարանի տղաները նոյն տեղում ունին ննջարան, ճաշարան, դպրոց և բաղնիք, մի խօսքով ամեն յարմարութիւններ։ Հիւանդանոցները և դպրոցները թէ Մեծ-Ղարաքիլիսայում և թէ Դիլիջանում իրենց մաքրութեամբ և կարգապահութեամբ, ինչպէս տեղեկացանք, գոհացուցիչ են եղել, միայն թէ դիտուել է, որ մի քանի տեղ որբերը շատ խիտ են տեղաւորուած եղել։

Գեներալ Թամամշեանը այստեղից ուղևորուեց Քարվանսարա դիտելու այնտեղի գաղթականական հիւանդանոցը, երկու որբանոցը և պահեստը։

Ամեն տեղ գաղթականները շրջապատում էին գեներալին և իրենց ցաւերը յայտնում սննդի, շորերի և վառելիքի պակասութեան և նպաստների անկանոն բաշխման մասին. գեներալը ուշադրութեամբ և կարեկցութեամբ լսում էր, ընդունում էր գրաւոր խնդիրներ և խոստանում էր վերադառնալուց յետոյ հարկաւոր կարգադրութիւններ անել։

Տօնի պատճառով դպրոցներում դասեր չկային, բայց և այնպէս գեներալ Թամամշեանը այցելեց դպրոցական շէնութիւնները։

Որբերի առողջութիւնը շատ նախանձելի է, միայն կաշուի հիւանդութիւնը բաւական տարածուած է Դիլիջանում, ինչպէս և ամեն տեղի որբանոցներում։

Գեներալ Թամամշեանը որոշել է կարևոր բժշկական միջոցներ ձեռք առնել ազատելու երեխաներին այդ հիւանդութիւնից։ Նրա օգնական բժ. Նեֆտոնովին առաջարկուեց այդ մասին ծրագիր մշակել։

Մտադրութիւն կայ ամեն տեղ կաշուի հիւանդութիւն ունեցող երեխաներին զատել միւսներից, տեղաւորել յատուկ որբանոցներում և կազմակերպել առանձին բժշկական խնամք։

---

ՆՈՒԽԻ.—Նուխու Կ. Հ. Բ. Ընկերութեան ճիւղի վարչութիւնը դիմում է Խորհրդին հետևեալ յայտարարութեամբ. «Բարեգ. Ընկ. այստեղի ճիւղը 90-ական թուականներին Նուխում ունեցել է մի հարուստ գրադարան-ընթերցարան, կազմուած բազմամեայ աշխատանքով և հարիւրաւոր անձերի նուիրաբերութեամբ։ Այդ հաստատութիւնը, Բար. Ընկ. ճիւղերի փակման պատճառով, 1899-ի նոյեմբերի 5-ի մի ժողովի որոշմամբ յանձնուել է Նուխուայ քաղաքային վարչութեանը՝ իբրև նուէր քաղաքին։ Այդ որոշումը կայացրել են 17 հոգով և գրադարանը, հազարաւոր գրքերով և տասնեակ պահարաններով ու այլ գոյքերով նուիրել են և Ընկերութեան իրաւասութիւնից հանել։ Նուիրաբերող 17 անձերը այդ որոշումը կայացրել են իբր թէ ընդհ. ժողով կազմած լինելու յաւակնութեամբ և գրադարանը յանձնելու հետ միասին պայման են դրել, որ հաստատութիւնը ծառայի ընթերցող հասարակութեան օգտին։ Մինչև այս 1916 թ. քաղաքը գրադարանը դրել է ընթերցող հասարակութեան տրամադրութեան տակ և օգտակար է դարձրել, սակայն 1916 թ. քաղաքային վարչութիւնը իւր ճնշող մեծամասնութիւն կազմող թուրք իրաւասուների որոշմամբ, գրադարան-ընթերցարանը հանել է կենտրոնից՝ հայկական մասից և փոխադրել է թրքական թաղը, բոլորովին զրկելով հայերին օգտուելու որև է յարմարութիւնից։

Այնպէս որ գրադարանի ռուսերէն գրքերից օգտւում են միմիայն թուրքերը, իսկ հայերէն գրքերից ո չ ո ք, որովհետև ոչ մի հայ որև է յարմարութիւն չունի յաճախելու այդ հեռաւոր մասը գիշերով, իսկ ցերեկուայ ժամերին էլ ամենքը զբաղուած են և թաղը հեռու։

Այսպէս ուրեմն Բարեգործ. Ընկ. միջոցներով միայն ձեռք բերած գրադարանը այժմ դարձել է թուրքերի սեփականութիւն և օգուտ չի բերում հայ հասարակութեան։ Քաղաքիս լրագրի և ընթերցանութեան սովոր հայերը իրենց արդարացի բողոքովը հանգիստ չեն տալիս վարչութեանս և պահանջում են Բարեգ. Ընկ. գրադարան-ընթերցարանի հիմնարկութիւն կամ թէ չէ յետ պահանջելու քաղաքային վարչութիւնից գոնէ հայերէն գրքերը։

Վարչութիւնս սեպտ. 26-ի յատուկ մի նիստում որոշում կայացրեց շուտափոյթ կերպով դիմումներ անել և վերաբանալ Բարեգ. Ընկ. գրադարան-ընթերցարանը։

Սկզբնական ծախսերից ազատ մնալու համար վարչութիւնը որոշել է դիմել դպրոցի հոգաբարձութեան և խնդրել՝ դպրոցի մէջ մի յարմար սենեակ յատկացնելու, այլ և դպրոցի գրադարանից փոխարինաբար Ընկ. տրամադրութեան տակ դնելու՝ ընթեռնելի գրքերի որոշ քանակութիւն. բացի այդ վարչութիւնս մտածում է իւր պահեստի գումարից փոխարինաբար 200 ռ. վերցնել ու նրանով գրքեր և լրագրեր բերել տալ։

Եւ այսպէս քաղաք. վարչութիւնից ետ ուզելով Ընկ. գրադարանի մի մասը—հայերէն գրքերը, աւելացնելով նրա վրայ դպրոցի գրադարանից ստացածները և 200 ռ. գնածները, վարչութիւնը յոյս ունի կազմելու մի կանոնաւոր գրադարան-ընթերցարան և գոհացում տալ ընթերցող հասարակութեան պահանջներին։

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Կ. Հ. Բ. Ընկ.-թեան Խորհուրդը իւր ամսիս 22-ի նիստում կայացրել է հետևեալ որոշումները.—

—Տալ Քարվանսարայի շրջանի պահեստի զինուորների ընտանիքների որդոց ուսման թոշակադրամ միանուագ հարիւր

ռուբլի, այլ և պահանջել փաստալից հաշիւ այն ճիւղերից, որոնց այդ նպատակով գումարներ են բաշխուած.

—Զխարի դպրոցին այս ուսումնակ. տար. ընթացքում նշանակուած 550 ռ. նպաստի վրայ միմիայն այս տարի աւելացնել եւս 300 ռ., որ միասին անում է 850 ռուբլի.

—Ի նկատի ունենալով, որ Բարվանսարայի դպրոցի հոգաբարձութիւնը, հակառակ իւր պայմանի և Խորհրդիս յորդորների՝ երկու տարուան ընթացքում անուշադիր գտնուեց դէպի դպրոցական գործը և դպրոցը չկարողացաւ երկդասեանի վերածել՝ կիսել այդ դպրոցին նշանակուած 345 ռ. նպաստը և այս տարի միմիայն 172 ռ. 50 կ. տալ։

—Բուլթայիսի վիճակի Լայլաշ գիւղի դպրոցի հոգաբարձութիւնից պահանջել լրացուցիչ տեղեկութիւն դպրոցի մուտքի, ելքի և հասարակութեան կողմից այդ դպրոցի պահպանութեան համար տուած միջոցների մասին։

—Սև-ծովեան նահանգի Պելինկօ գիւղի հասարակութեանը, պ. Վրոյրի միջոցաւ, ուղարկել Ընկերութեանս կանոնադրութիւնից և հրահանգ նոր ճիւղ բանալու, համաձայն յիշեալ Վրոյրի խնդրքի։

—Որովհետև Ճիաթուրի ճիւղը, անդամների մեծամասնութեան ցրուելու պատճառով, դադարեցրել էր իւր գործունէութիւնը, ուստի համաձայն տեղի դպրոցի հոգաբարձութեան առաջարկել կազմել անդամների ընդհանուր ժողով և կատարել վարչութեան անդամների և նախագահի նոր ընտրութիւն։ Այլև պահանջել նոյն ճիւղի նախագահ պ. Դանիէլ Արովեանից, որն այժմ ծառայում է Թիֆլիսում, բոլոր իւր մօտ գտնուած գործերը յանձնել Խորհրդիս։

—Տալ պ. Արամ Պետրոսեան Մեհրաբեանին մշտական անդամութեան վկայագիր (ДИПЛОМЪ) վաւերագրած Խորհրդի անդամների ստորագրութիւններով։

—Պահեստի զինուորների ընտանիքների զաւակների համար, որոնք սովորում են քաղաքիս ծխ. դպրոցներում և գտնւում են նիւթական շատ նեղ վիճակի մէջ, յատկացնել Ընկերութեանս ճաշարանին 480 ռուբլի, որպէս զի այդ գումարի հաշուին 10 հոգի յիշեալ ընտանիքների զաւակներից ձրի ճաշ ստանան։

—Առաջարկել Շրվինանց դպրոցի հոգաբարձութեան՝ բանալ Ընկ. ճիւղ և տեղումը կազմած «Աղքատախնամ ընկ.» անունով ժողոված 1600 ռ. գումարը մուծնել ճիւղի գանձարանը յանուն հանգ. վարժ. Ա. Տէր-Մինասեանի։

—Առաջարկել Երևանի ճիւղին՝ ընտրել Բար. Ընկ. կողմից մի ներկայացուցիչ մասնակցելու տեղւոյն փոխատու կոմիտէի մէջ, որին տրուած է 275,000 ռ. օժանդակութիւն՝ տալու Թիւրքահայ երկրագործներին, վաճառականներին և արհեստաւորներին։

* * *

Թիֆլիսի փոխադարձ վարկի ընկ. ծառայողներից շնորհակալութեամբ ստացուած է յօգուտ փախստականների 12 ռ. 30 կ. և Կ. Հայուհեաց Բարեգ. Ընկերութիւնից եօթ աշակերտուհու մի ամսուայ ճաշավարձ 42 ռ.։

## ՃԻՒՂԵՐ

Բարվանսարայի ճիւղի վարչութիւնը գրում է.—Հացի պակասութիւնից առաջանալի սովը և իւր հետևանքները անկարող եմ գրի անցնել։ Դպրոցների շէմքերն են մաշում տատերը կամ պատերազմ գնացած զինուորների ամուսինները իւրեանց թոռների կամ զաւակների հետ՝ դպրոց մտցնելու երեխաներին. բայց մերժում են ստանում վարչութիւններից։ Հարցնում են՝ ով է վճարելու դրանց թոշակագրամը։ Նման գրութիւններ ամեն կողմից միշտ ստացւում են, մանաւանդ ուսուցիչներից։

Հարկաւոր է շրջանիս 10 դպրոցների բազմաթիւ այդպիսի ուսումնածարաւ և նիւթականից զուրկ պահեստների որդոց և որբոց թոշակագրամը հոգալ։

Ոչ մի բառ չի կարող պատերազմում գտնուողների և նրանց տանը մնացածների դրութիւնը պատկերացնել, ոչ մի խօսք թանգութիւնը նկարագրող և ոչ մի գոյք՝ այդպիսիներին մխիթարողներին։ Մեր շրջանի այդպիսի թոշակաւոր աշակերտների թիւը հասնում է 170-ի, որոնց թոշակների չափը 3—5 ռուբլի է։

Շուլաւէր.—Ընկերութեանդ Շուլաւէրի ճիւղը սկսած լինելով իւր գործունէութիւնը՝ կատարեց պաշտօնատար մարմինների ընտրութիւն։ Ճիւղի իսկական անդամների թիւը առ այժմ 40 է, իսկ մշտական անդամ գրուել է միայն մի անձ՝ պ. Արամ Մեհրաբեան, վճարելով սահմանուած միանուագ 100 ռ. գումարը։

Սաչխերէթ.—Մինչև այժմ Ճիաթուրի ճիւղի գործերը կանգ էին առել շնորհիւ այն հանգամանքի, որ վարչութեան անդամները և նախագահը հեռացած էին Ճիաթուրից։ Ներկայումս տեղւոյս ծխ. դպրոցի հոգաբարձու և ճիւղի մշտական անդամ պ. Արմենակ Բարսեղեանի շնորհիւ կարգի են բերուած ճիւղի գործերը։ Նախագահ Դ. Արովեանի Թիֆլիսում պաշտօնով գտնուելու պատճառով հարկաւոր է միայն ընտրել նոր նախագահ և վարչութեան անդամներ, որը տեղի կունենայ, երբ պ. Արովեանը կը յանձնէ իւր մօտ գտնուած ճիւղի գործերը։

Լայլաշ (Բուլթայիսի վիճ.).—Արդէն յայտնի պէտք է լինի Իմերէթի ամենահեռաւոր անկիւններից մէկում ընկած Լայլաշ գիւղի հայ հասարակութեան անմխիթար վիճակը։ Տասնեակ տարիներ շարունակ ապրելով վրաց միջավայրում, միանգամայն մոռացել է իւր մայրենի լեզուն այն աստիճան, որ իրեն հայ անուանող հասարակութեան մէջ չի գտնուի մէկը, որի հետ հնարաւոր լինի հարազատ լեզուով բացատրուել։ Լեզուից և լոյսից զուրկ, 40-ի չափ հայ ծխական ունեցող Լայլաշ գիւղը չէ կարող իւր ունեցած միջոցներով դպրոց բանալ առանց Խորհրդի նպաստի։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷ

Հ. կ. Կոմիտէն լսեց իշխանուհի Մ. Մ. Թումանեանցի զեկուցումն նրա նախաձեռնութեամբ բացուած և անմիջական ղեկավարութեամբ պահուող Կենտրոնական Կոմիտէի անուամբ Թիֆլիսի գաղթականական արհեստանոցի մասին։ Արհեստանոցը բացուած է մէկ տարուց աւելի և ունի հետևեալ բաժանմունքները. 1) ջուլհականոց բրդի և բամբակի թելից հագուստեղէն գործելու, 2) կազմարարական 3) և դպրոցական տետրեր և առևտրական գրքեր պատրաստելու բաժանմունք և 4) ծրարների բաժանմունք։

Բոլոր աշխատանքները կատարում են գաղթականները։ Իշխ. Թումանեանը ստացել է Կենտրոնականից գործը կազմակերպելու համար 9000 ռ., որից 2000 ռ. վերադարձրել է աշխատանքից և սկզբից մինչև օրս ունեցել է մուտք 64,736—25, ծախք՝ 62,294—49 կ., բացի այս մուտքից, արհեստանոցին մնում են իբրև սեփականութիւն արհեստանոցի մեքենաները, փայտէ գործիքները բաւական մեծ արժողութեան։

Նիստին իշխ. Թումանեանցը ներկայացրեց գործուածքներից նմուշներ։

Կ. Կոմիտէն, գտնելով գործը շատ համակրելի և իշխ. Թումանեանի նախաձեռնութիւնն ու գործ դրած աշխատանքը արժանի գովասանքի, որոշեց շնորհակալութիւն յայտնել իշխ. Թումանեանին և առաջարկեց պատրաստել որբանոցների համար մեծ քանակութեամբ զանազան տեսակ զգեստի կտորներ համաձայնութեամբ Կոմիտէի մասնաժողովի։

—

Հ. կ. Կոմիտէին կից ընտրուած որբանոցների գործով զբաղուող յանձնախումբը, Կ. Կոմիտէի հովանաւորութեան տակ տրուելիք Աստրախանի որբանոցի համար հոգաբարձութիւնն ընտրեց հետևեալ անձերից՝ տ. տ. Ռոստոմեան, Օզանէզեան, Խատարեան, օր. Տէր-Գրիգորեան և պ. Արաղեան։

Ղզլարի հայոց յանձնաժողովը առանձին գրութեամբ դիմել է Կ. Կոմիտէին և յայտնել, որ մօտիկ ապագայում իրենց տնօրէնութեան տակ գտնուող որբերին պիտի տեղափոխեն Թիֆլիս, և խնդրում են ընդունել նրանց Կոմիտէի հովանաւորութեան ներքև։ Կ. Կոմիտէն որոշել է ընդունել, եթէ տեղափոխութեան արգելքներ չլինին։

—

Հ. Կ. Կոմիտէն Էրզրումի գաղթականութեան համար մի վագոն տաք շոր փոխադրեց։

—

Հ. Կ. Կոմիտէն հոկտ. 27-ի նիստում, գաղթ. դպրոցական յանձնաժողովի Նախագահ պ. Իս. Յարութիւնեանի զեկուցման համաձայն՝ որոշեց գաղթ. դպրոցների համար ռուսերէն իմացող շրջիկ տեսուչներ ունենալ։

Տանձոտ գիւղի ներկայացուցիչ պ. Մադմանեանը Հ. Կ. Կոմիտէին մի ընդարձակ զեկուցում տուեց Տանձոտի շրջանի գիւղացիների և գաղթականների դրութեան մասին։

Կոմիտէն որոշեց մի լիազոր ուղարկել այդ շրջանը և բանալ մի որբանոց։

## Հ. Կ. ԿՈՄԻՏԷԻ ԳԱՂԹ. ԴՊՐՈՑՆԵՐԸ

Արդահանի Հ. Բ. Ընկ. ճիւղի նախագահը հեռագրում է, որ Արդահանում և Ուռուտում բացուել են գաղթ. դպրոցներ, Ուռուտի համար խնդրում են ուղարկել մի ուսուցիչ։

Նոր-Բայազէդի շրջանում բացուել են 22 գաղթ. դպրոց 1005 աշակերտով և 25 ուսուցչով։

Ներքին-Ախտայից Նշան Յակովբեանը հեռագրում է, որ Դարաչիչակի շրջանում բացուել են 15 գաղթ. դպրոց, որոնց համար 4 ուսուցիչ կայ տեղում, իսկ 11 ուսուցիչ պակասում է. խնդրում է ուղարկել վերոյիշեալ շրջանի համար 11 ուսուցիչ։

Ախալքալաքից հաղորդում են, որ այնտեղ բացուած է գաղթ. մի դպրոց 100 աշակերտի համար։

Վանից Հ. Կ. Կոմիտէի լիազորը գրում է, որ Վանում և շրջանում 2000-ի չափ դպրոցական հասակ ունեցող երեխաներ կան, որոնց համար անհրաժեշտ է բանալ դպրոցներ Վանում, Էրիդեն, Հերճ, Լեսկ, Դարմանա, Բերցակ և Ալիւր գիւղերում։ Վերոյիշեալ գիւղերում դպրոցական հասակ ունեցողների թիւը մօտ 730 է։ Հ. Կենտ. Կոմիտէին կից գաղթ. դպրոցական յանձնաժողովն այդ նպատակի համար ուղարկել է 3000 ռ., շուտով կուղարկուեն նաև դպրոցական պիտոյքներ։

# ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

## ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Վելիկոկնեաժեսկի կայարան—Լիսիկատոսից.

Խնդրում եմ հեռագրով միջնորդութիւն յարուցանել Դոնի շրջանի լիազորի առաջ՝ Ձեզ համար պատրաստուած ալիւրը ազատելու գրաւումից։

—

Ռոստով-Դոնի վերայ—Եղբարք Դիմակոսից.

Ձեզ համար յանձնեցինք երկաթուղուն 45 վագոն ալիւր, 5 վագոն ևս կը յանձնենք մօտ օրերս։

—

Կարին—Տէր-Յակոբեանից.

Գործում է Բէքստոնի որբանոցը. մերը այժմ կազմակերպւում է առայժմ 50 որբի համար. Երզնկայի շրջանում հնար չկայ ցորեն գնելու, կարելի է միայն գնել Դերջանի շրջանում պուդը հինգ ռուբլու։ Ջորեանը այդ մասին հոգ է տանում։ Փոխադրեցէք չորս վագոն ալիւր, 500 պուդ շաքար, 50 պուդ թէյ, 300 պուդ աղ, 25 արկղ սապոն։

—

Իգդիր—Ազարիկ Ազարեանից.

Սարիղամիշի բեռնատարքը (տրանսպորտը) ամսիս 25-ին երեկոյեան դուրս եկաւ Իգդիրից, հետը տանելով 3000 խուրձ խոտ։

## Կ. Հ. Բ. ԸՆԿ. ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ —

Բարեգործական Ընկերութեան պահեստների բաժանմունքը այս շաբաթ կատարել է հետևեալ առաքումները.

Շաքար ուղարկուած է. Երևան, Սարիղամիշ, Ալէքսանդրապոլ, Վաղարշապատ և Իգդիր մի մի վագոն։

Ալիւր. Սարիղամիշ, Նոր-Բայազէդ, Էջմիածին, Իգդիր, Դիլիջան, Ղարաքիլիսա մի մի վագոն։ Վաղարշապատ 3, Աղստաֆա 1, Իգդիր 2, Ալէքսանդրապոլ 2, Փանձակ 1 և Երևան 3 վագոն. վերջին երեք վագոնը դիջել է գաղթականական գործի լիազոր գէն. Թամամշեանը, որովհետև պահեստը պատրաստի ալիւր չունէր Թիֆլիսում Երևան ուղարկելու համար։ Բացի այդ մեր Երևանի պահեստի գործերը թեթևացնելու համար՝ գէն. Թամամշեանը և Երևանի նահանգապետը համաձայնութիւն են կայացրել, որպէսզի Երևանի քաղաքի գաղթականութիւնն այսուհետև ալիւր ստանայ ոչ թէ մեր պահեստից, այլ նահանգապետից։

***

Սարիղամիշ—Էրզրում բեռնաշարքը (տրանսպորտ) արդէն ճանապարհուել է Իգդիրից և այս երկու օրը կը լինի Սարիղամիշում և գործի կանգնի։

***

Պահեստների գործի լիազոր պ. Գ. Մարտիրոսեանը այսօր մեկնեց Փոթի՝ այնտեղ ստացուած ապրանքների առաքումը արագացնելու և կանոնաւորելու։

***

Փանձակի պահեստը տեղական գաղթականութեան համար տեղումն գնել է 3 վագոն ալիւր. բանակցութիւններ է վարում 4 վագոն ևս գնելու։

***

Ղարաչինարում և Աննիկո բացուած են բաժանմունքներ՝ գաւառի գաղթականութեանը դիւրութիւններ տալու համար։

***

Թիֆլիսում արդէն ստացուած են Փոթուց ուղարկուած 13 վագոն ալիւր, որոնք պէտք է ուղարկուեն աւելի կարիք ունեցող պահեստներին։

# Քրոնիկոն

Կասպիում վախճանուել է վրաց յայտնի պատմաբան Ժորդանիան, որի աճիւնը բերուել է Թիֆլիս և այսօր թաղուելու է Դիդուբէի վրաց պանթէոնում։

***

Թիֆլիս է եկել արդարադատութեան նախարարի օգնական Ն. Դ. Զապլին, որ միաժամանակ Տատիշեան յանձնաժողովի անդամ է։ Զապլին եկել է ծանօթանալու փախստականների դրութեանը Անդրկովկասում, Թիւրքաց Հայաստանում և Պարսկաստանում։ Զապլինը միաժամանակ ծանօթանալու է փախստական-

ներին օգնող բոլոր կազմակերպութիւնների գործունէութեանը յիշեալ վայրերում։

* * *

Կազանի թաթարները Թիֆլիսում հիմնում են մի սպառողական ընկերութիւն «Օգնութիւն» անունով, որի կանոնադրութիւնն արդէն հաստատուած է Նահանգապետի կողմից։

* * *

Նոյեմբերի 1-ից վերաբացուելու է Թիֆլիսի Ալէքսանդրեան հիւանդանոցը։

* * *

Ինչպէս յայտնի է, ելէքտրաքարշի տուած զոհերից մեծ մասը լինում են նրանք, որոնք իջնում և նստում են ելէքտրաքարշի գնալու ժամանակ։

Այդ դժբաղդ դէպքերից ազատուելու համար մեր կարծիքով միակ միջոցն է, եթէ ելէքտրաքարշի երկու կողմի երկար աստիճանները ծալուող լինեն։ Այս դէպքում կծալուի այն կողմի աստիճանը, որը հարկաւոր չի լինի և դրանով վերջ կտրուի ելէքտրաքարշի հակառակ կողմից թէ նստելուն, թէ իջնելուն և թէ աստիճանների վրայ կանգնելուն

* * *

Կ. Հ. Բ. Ընկերութեան «Անահիտեան» գրադարաններից մի-մի հատ յատկացուած է Լոյս ընկերութեան դպրոցին, Սուրբ Կարապետի դպրոցին, Ծուբինեանի փախստականների որբանոցի և Նպաստամատոյցի Կարսի որբանոցին։ Իսկ «Շիրինեան» գրադարաններից մէկը յատկացուած է ընկերութեան Արդահանի ճիւղին։

* * *

Հայ Երաժշտական ընկերութիւնը մտադիր է մօտ օրերս կազմակերպելու մի շարք օպերային (թատերգային) ներկայացումներ։ Առաջին ներկայացումը տրուելու է Լերմոնտովի «Դևը» հայերէն լեզուով։ Ընկ. կազմակերպելու է նաև համերգներ հայ երաժշտագէտների երկերից։

* * *

Ի նկատի ունենալով մեր գիւղերին սպառնացող սովը՝ Բագուի Բիւրօն, Կուլտուրական Միութիւնը, Մարդասիրական և «Ցորեն» առևտրական ընկ. որոշել են միացեալ ոյժերով Գանձակի, Երևանի նահանգներին և Կարսի շրջանի մօտ 1000 հայ գիւղերին առքի գնով ցորեն և ալիւր մատակարարել։ Թիֆլիսի հայ կազմակերպութիւնների միութիւնը ևս որոշել է գործակցել նրանց։

* * *

Մօտ օրերս հայ արուեստագէտների միութիւնը բանալու է իր անդամների աշխատութիւնների ցուցահանդէս։

* * *

Վրաց բարեգործական ընկերութիւնը Արդահանում բաց է արել ընկերութեան ճիւղ։ Այդպիսով Արդահանում գործելու են Կովկասի Հայոց Բարեգործական և Վրաց Բարեգործական ընկերութեանց ճիւղերը։

* * *

Ամսիս 27-ից Թիֆլիսում սկսեց լոյս տեսնել «Հայրենիք» անունով թերթ ղեկավարութեամբ Սեդ. Թառայեանի։

* * *

Վեհափառ Հայրապետի կարգադրութեամբ, Ջաւէն վարդապետը նշանակուած է Էրզրում հայ հոգևորականութեան ներկայացուցիչ, իսկ Բաթումի աւագ քահանայ Տէր-Մեսրոպ Մելիքեանցը՝ Տըրապիզոն։

* * *

Հայ Գրողների Ընկերութիւնը ձեռնարկել է կազմելու բանաստեղծութեան ժողովածու (սկզբից մինչև մեր օրերը), որի մէջ մեծ տեղ է տրուելու հին բանաստեղծութեանը։ Ժողովածուն բաղկացած է լինելու մի քանի հատորներից։

Գ. Ց. Զմշկեանի բարեհաճ դերուսուցմամբ (ռեժիսորութեամբ)՝ Հայոց Դրամատիկ ընկերութեան խումբը վաղը, երկուշաբթի, հոկտեմբերի 31-ին կըտայ իր հինգերորդ հերթական ներկայացումը Արտիստիկ թատրոնում. խաղալու են «Նապոլէոնի մահը», եղերերգ Լուխմանովայի. Նապոլէոնի դերը կը կատարէ տիկ. Սիրանոյշը։ Յետոյ՝ «Ցնորքներ» կատակերգ, էդ. Ռուստանի։ Մասնակցում է ամբողջ խումբը։

* * *

Հոկտ. 27-ին ծերակոյտի անդամ Ն. Դ. Զասլինին (արդարադատութեան նախարարի օգնական) ներկայացաւ Հայկ. Կենտ. Կոմիտէի և Բարեգործ. Ընկ. նախագահ Ս. Յարութիւնեան և զեկուց փախստականների դրութեան, որբանոցների և գաղթականական դպրոցների մասին։ Որբերի ապաստարանները լի են որբերով, կառավարութեան որոշուած նորմայով, այն է 7,000 հոգի, իսկ դպրոցական հասակի փախստական երեխաների թիւը 9,000 է, որոնց Տատիանեան կոմիտէն որոշել էր տալ միջոցներ. այդ թիւն այժմ հասել է 20,000-ի։ Զասլինը հետաքրքրուեց նաև փախստականների գործով զբաղուող հայ կազմակերպութիւնների գործունէութեամբ և յայտնեց, որ Տատիանեան յանձնաժողովը կարող է լայն աջակցութիւն ցոյց տալ, եթէ այդ կազմակերպութիւնները համերաշխ և կանոնաւոր գործեն։ Զասլինը ցանկացել է դիտել Թիֆլիսի որբանոցներն ու գաղթականական դպրոցները և խորհրդակցել փախստականների գործով զբաղուող կազմակերպութիւնների ներկայացուցիչների հետ։

Հետևեալ օրը սեն. Զասլինը փոխայցելութիւն արաւ պ. Ս. Յարութիւնեանին։

* * *

Լոնդոնի հայանպաստ Կարմիր Խաչի նախագահ, օր. Ռոբենզոն փոխադրել է Հայկական Կենտրոնական Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանին 7750 ռ. հայ գաղթականների համար։ Այդ գումարից 1550 ռ. նշանակուած է Թիֆլիսի գաղթական հայ ուսուցիչների ընկերութեան համար։

Իսկ Բոստոնից նոյն հասցէով ստացուած է «Հայրենիքի» խմբագրութիւնից հեռագիրներ, որ փոխադրուած է մի շարք գաղթականների համար նրանց արտասահմանեան ազգականներից զանազան գումարներ։ Այդ ցուցակը կը տպագրուի «Համբաւաբերի» հետևեալ համարում և միւս լրագրերում։

# Արտաքին տեսութիւն

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

### ALL' ARMENIA—ՀԱՅԱՍՏԱՆԻՆ

Իտալիայի Սպեցիա ծովամերձ քաղաքում նորերս լոյս է տեսել մի շքեղ պատկերազարդ հրատարակութիւն, որը կրում է «All' Armenia» վերնագիրը։ Այս իսկապէս իտալական «L Eroica» ամսագրի այս տարուայ Ը—Ժ միացեալ համարներն են, որ յատուկ նուիրուած են Հայաստանին։

«Այս հատորը, որ մենք այսօր նուիրում ենք Հայաստանին,—ասում է խմբագրութիւնը,—թող լինի սիրոյ, հաւատի և յուսոյ մի նշան քրիստոնեայ թշուառ ազգին, որ հեծում է դաժան շղթաներում»։

Գրքի շապիկը զարդարուած է մի սիմվոլիկ նկարով, որ պատկանում է Շառլ Դուդելէին։ Նկարիչը նիւթն առել է Կոստանդ Զարեանի նոյն գրքում տպագրուած քերթուածից (պոյեմայից), որի վերնագիրն է «Երեք տաղ, որ խօսում են երկրի և երկնքի վշտերից»։ Այդ քերթուածի մէջ բանաստեղծը խօսեցնում է ջրին, քամուն, ամպերին, փոթորկին և նրանց բերանով է յայտնում իր սիմվոլիկ մտքերն ու խոհերը։ Մի ծերունի, մի պա-

Դեկտեմբերին մի գօրաբաժին՝ բաղկացած 1000—1500 հոգուց՝ Մուշից անցաւ Սասուն։ Հայերը թողին Կէլիէկուզանը և մի քանի ուղղութեամբ հեռացան և բռնեցին կարևոր դիրքերը, Ամպըրնու գլուխ, Աղչըլուց, Անտոգ, մի մասն էլ անցաւ Կորչիկ։ Զօրքը մտաւ գիւղը, մօտ 100 հիւանդ, ծերունի, կին, երեխայ մորթեց, նորակառոյց խրճիթները քանդեց (այրելը անհնարին էր), եղած չեղածը ոչնչացուց և յաջորդ օրը ետ վերադարձաւ։ Զօրքի հեռանալուց անմիջապէս յետոյ ձեան շերտերու և ժայռերու ծէրին թառած արծուիկները վար իջան, թաղեցին իրենց մորթուած մեռելները, վերաշինեցին քանդուած խրճիթները և շարունակեցին իրենց սովորական կեանքը։

Պաշարի նուազիլը զգալի դարձաւ, վարակիչ հիւանդութիւնները երևան եկան։

Յունուարի սկզբին զօրքը նորից բարձրացաւ Սասուն. մեր բնաւեր արծիւները կրկին թողին Կէլիէկուզանը և բռնեցին դէպի գագաթներ տանող ճանապարհներ, որպէսզի կարելի լինէր վրէժով մեռնել, այդ էր մնացել նրանց անելու։ Թշնամին կրկին հանդիպողին կոտորեց, տուները քանդեց, ամեն ինչ որ տեսաւ փճացրեց և առանց սպասելու յետ գնաց։

Երրորդ անգամ սասունցին շինեց իր բնակարանը յաղթելով բնութեան խոչընդոտներին։ Հիւանդութիւնն ու սովը իրենց աւերը շարունակում էին մեծ չափերով։ Օր աւուր կը պակսէր հայերու թիւը և այդ չէր ազդում մնացածների վրայ, քանի որ մահն ամենի առջեն էր. և որչափ մեծ թուով մեռնէին, մնացածները հնարաւորութիւն կունենային աւելի երկար ապրելու։ Այդ նպատակով անհագին թուով մարդիկ կոտորուեցան իրենց հարազատների ձեռքերով, վերջինները դեռ կան ու կապրին, և այդ իրողութիւն է։

Սնունդը և պաշարը վերջացան, հոգի փրկելու համար ձեռք տուին անսուրբ համարուած կենդանիներին, շան ու կատուին։ Բանակատեղերու ձիւնը հորթեցին, աշնանից մնացած ոչխարների նեխած դիակներ, ոսկորներն ու գանկերը հանեցին ու կերան. ձիւնն ու հողը փորելով խոտերու արմատները դուրս բերին և կերան, այդ պատճառաւ ուտողներից շատեր օրերով ուշաթափ մնացին։ Տասներկու տարեկան մի երեխայ պատմում է, որ 10 օր ապրել է լոկ մի այծի չոր մորթ ուտելով։ Մի քանի տեղեր, ինչպէս Ագրիկ և Հեթինկ մեռածների դիակներ կերան. ուրիշ միջոց չունէին, որոշեցին հետևել քիւրդերու օրինակին—թալանել և գողանալ. ձմեռուայ բուք-բորանին կը մտնէին շրջակայ քիւրդերու գիւղերը, գիշերով, գաղտուկ կը բանային գոմերու դռներ, կը մորթէին ոչխար-տաւարներ և շալկելով՝ մի քանի ժամուայ ճանապարհ կտրելով կը հասնէին իրենց բնակավայրը—Կէլիէկուզան. յաճախ քիւրդերը կիմանային և կը սկսուէր կռիւ.... Սովը այն աստիճանին հասաւ, որ ստիպեց մեր քաղցած-կիսամեռ սասունցիները մինչև Մուշ քաղաքը գնալ գիշերով, մտնել ջաղացներ և կողոպտել տանել ուտելեղէններ։

Մինչև այդ կառավարութիւնը կարծում էր, որ սասունցիները արդէն մեռած ոչնչացած են սովից ու բուքից, բայց երբ կենդանութեան հետքերի նշանները տեսաւ, փութաց սովի և բռնութեան պակաս թողածը լրացնելու։

Այն ժամանակ, երբ ռուսական բանակը մի կողմից գրաւում էր Հասան-ղալան և մօտենում էր Էրզրումի պարիսպներին, միւս կողմից գրաւում էր Դոբըն ու Խնուս բերդը և սպառնում էր Մուշին, թուրք մարդակեր կառավարութիւնը այնքան էր տարուած սասունցիների սերունդը աշխարհի երեսից վերցնելու մտքով, որ փոխանակ զօրքը ռուսաց դէմ ուղարկելու, ուղարկեց Սասուն՝ բնաւեր սասունցիները հետապնդելու և կոտորելու։ Ու երբ ռուս բանակը հայ կամաւորների հետ փետրուարի սկզբին գրաւեց Մուշը, թուրքական այն զօրամասը, որ հետապնդում էր սասունցիների բնաջնջումը, այլ ևս հնարաւորութիւն չունեցաւ Մուշ վերադառնալ. իր սկսած գործը կիսակատար թողնելով, սրտի կսկիծով փախաւ դէպի Շէն։

Հայերը ապշեցին, տեսնելով թշնամու անապարանօք և խուճապային յետ գնալը։ Ռուսներու գալու յոյսը շատոնց մոռացել էին. իրենց լրատու, բարեկամ քիւրդ Հաւէնն երկար ժամանակ էր, որ լուր չէր տուած. ինչ բանի վերագրէին, ինչով բացատրէին այդ անօրինակ ընթացքը։ Կարծեցին մի խաղ է, որ կառավարութիւնը սարքում է, որով ուզում է միամտացնել հայերին և յանկարծակիի բերել։ Հայերը նախազգուշական միջոցներ ձեռք առնելով սպասեցին երկու օր։ Ահա քիւրդ բարեկամը եկաւ բերելով իր հետ Ա զ ա տ ու թ ե ա ն, Փ ր կ ու թ ե ա ն աւ ե տ ի ք ը։

Քիչ առաջուայ յուսահատութեան մատնուած կորիւնները ոգևորուեցան, Ազատութեան լուրը ցնցեց մեր կարիճ, ժայռի պէս տոկուն լեռնականները. իսկոյն որոշեցին 10 հոգուց բաղկացած մի խմբակ ղրկել Մուշ ճիշտ տեղեկութիւն բերելու։

Գնացողները Գուռտիկ լեռան վրայ բուքի և փոթորիկի բռնուելով երեք հոգի զոհ տուին... վերջին զոհերը, ու անցան Մուշ։

Յաջորդ օրը, փետրուար 14-ին, օդը խաղաղ էր ու պայծառ։ Սարերու արծուիկները անհամբեր, սրտատրոփ սպասում էին լրաբերներուն և ահա սարի գլխին երևացին երկու հոգի դրօշակներով։ Նրանց երևալուն պէս սկսաւ հրացանաձգութիւն։ Դիակոյտերի տակ տնքացող ձորերը արձագանգ տուին և ցնծութեամբ լեցուեցին քարայրերի, քարանձաւների մէջ ապաստանող հարիւրաւոր մաշուած, հիւծուած մարդ-արարածների սրտերը. Նրանց հոգին լեցուեցաւ ազատութեան ոգեցունց բերկրանքով և դուրս եկան մգլած, բորբոսնած այրերից, խրճիթներից, հաւաքուեցան միասին, զէն ի ձեռին ասպետական խրոխտ հպարտ քայլուածքով ողջունեցին ռուս ազատարար բանակը և հայ քաջերի կամաւորները, որոնք գարըներ էին իրենց Ազատութեան ճանապարհը։

Մօտ երեսուն հազար բնակչութիւն ունեցող Սասունից հազիւ 1000-1200 հոգի ազատուեցին և որոնք թէ ինչ պայմանների տակ ապրեցին և ազատուեցին—մենք տեսանք արդէն։

Յարգանք դիւցազնաբար ընկածներին և փառք ու պատիւ ապրողներին։

Կ. ԵՐԻՑԵԱՆ

(Վ ե ր ջ)

# Գ ե ղ ա ր ու ե ս տ

## ԱՆՎԵՐԱԴԱՐՁ

Պարտէզիս մէջ՝ մորմոք, հառաչ, վարդաստուղ,
սոխակն է ան որ կը թափէ արտասուք.
թառած թափուր վարդի թփի ուսերուն,
մահը կ՚երգէ վարդին քնքուշ ու սիրուն...

Մի լար, սոխակ, դու վառ սիրոյ վեհ քերթող,
ցաւըդ մոռցի՛ր, քո մահաբեր վէրքեր թող.
կուգայ կրկին գարունը պերճ, համբերէ,
գուցէ քեզի նոր իղձ, նոր յոյզ, համ բերէ։

Ծաղկեն պիտի, բուրեն վարդերն ան յուշիկ
եւ դու նորէն կ՚երգես երգեր անուշիկ...
Մի լար, սոխակ, դու վառ սիրոյ վեհ քերթող,
ցաւըդ մոռցի՛ր, քո մահաբեր վէրքեր թող։

* * *

*Աշխարհը ողջ, ա՜խ, ինձ համար մի անօթ,*
*բերանը գոց, խաւարանիստ և անօդ.*
*Եւ ես նստած խաւարին մէջ՝ գորշ հագած,*
*կուլա՜մ, սոխա՜կ, կուլամ վարդըս խորշակած...*

*Կուլամ, սոխա՜կ, օրերըս հի՜ն, ջերմագին*
*և կը նայեմ ձմեռւայ ձիւն-ճերմակին.*
*ա՜խ, մանաւանդ կուլամ գարունն իմ կենաց,*
*որ լքեց ինձ անվերադարձ ու գնա՜ց...*

Ազատ-Վշտունի

# Գրականութիւն

## Հին մեղաւորը*)

Բ.

Դառն վիշտը լեռան պէս մեծացել, սրտիս վրայ նստել էր. էլ ինչ եռանդ կարող էի ունենալ քահանայագործութիւն անելու, երբ աչքերս կորտւում էին ընտանիքիս աւերակներին նայելով. մի կողմում 3 մանր որբ, միւս կողմում չքնաղ, դալկադէմ հրեշտակ, որ իմ սիրու համար դարձել էր ժողովրդի բերանի ծամոնը։

Ապրուստ էր պէտք, ինչ անէի, քահանայական եկամուտները խլել էին, օդով երեխաներ կերակրել չէր կարելի։ Իմ մասին ողջ գաւառում հայ, թուրք, վրացի խօսում էին ու համարեա ամենը վիճակիս կարեկցում։ Այդ խառն ժամանակները շատ շատերը թալանչութեամբ, աւազակութեամբ մեծամեծ օջաղներ էին պահում։ Ո՞ր աւազակն էր ինձնից քաջ. մի թուր ածելով եզան գլուխը թռցնում էի։ Քանի՛ցս նշանաւոր աւազակապետները մարդիկ ուղարկեցին մօտս. «ա՜յ Դալի քէշիշ, արի մեզ միացիր, քեֆիդ ուզած ապրիր»։ Այդ հրաւէրները մերժելով յօժարուեցի միանալ ուրիշ խմբի ապրուստ անելու համար։ Քաղաքից մինչև տաճկաց սահմանը 27 վերստ էր. ձի նստած, զէնքերս կապած, մի քանի ճարպիկ մարդկանց հետ սկսայ անմաքս ապրանք անցկացնել գիշերները սահմանի վրայով։ Փարաջէս միշտ լինում էր վրէս, փեշերը ժողոված կապում էի մէջքիս, ներքևից երևում էր անթարիս-կապա։ Գդակս լայն ափնաւոր մահուդէ շլեապ էր, ինչ ձև ուզում էի, տալիս էի։ Ոչ մարդ էի սպանում, ոչ ուրիշի կայքը թալանում, այլ էժան ապրանքը վտանգի տակ անցկացնում ու քիչ վաստակով վաճառականներին տալիս։ Ամեն տեղերից սրտակոտոր երիտասարդներ վազում էին մօտս, պատմում իրանց վիշտը և օգնութիւն խնդրում։ Ամենն էլ սիրավառ սրտեր էին, կարօտ մնացած սիրած կոյսերին։ Մէկտեղ աղջկայ հայրն էր խանգարողը, միւս տեղ մեծ եղբայրը, ևն։ Դժուար չէր ինձ համար այդպիսի խոչընդոտներ հարթելը. ձին՝ նստած գնում էի գիշերը սիրող երիտասարդի հետ աղջկան հանում տանից, մերթ համոզելով, մերթ սպառնալով խափանողներին։ Դալի քէշիշի առաջ ոչ մի աղջկայ տէր չէր ընդդիմանում. ջահէլներին հասցնում էի իրանց մուրազին և ինքս սրտիս մէջ մխիթարւում։ Այդ ծառայութիւնների համար ոչ մի վարձատրութիւն չեմ վերցրած, եթէ չը յիշեմ ընծայ բաները, որ երախտապարտ երիտասարդներն ինձնից ծածուկ բերել են տունս իմ բացակայ միջոցին։

Երբ ինձ հնար չէին տալիս սիրածս աղջկայ հետ պսակուելու, խաղաղ սրտով տանը նստելու, լիուլի զգում էի մուրազաչոր անձանց վիճակը։ Հէնց որ երևում էի քաղաքում, հակառակորդներիս հանգստութիւնը կորչում էր, աշխատում էին օձի պէս խայթած պահել թէ ինձ և թէ Գեղանուշին։ Արած մեղքս ինչ էր, չէի հասկանում։ Քաղաքում տուն չէի կորել, մարդ չէի սպանել, միակ ցանկութիւնս էր ընտանիքիս գլխին եկած դժբաղդութիւնը մեղմացնել, որ ապագայում տղաս հասարակութեան օգտակար անդամ դառնայ, աղջիկներս էլ առաքինի մայրեր։ Բայց այդ բանին, չըգիտեմ ինչու, դէմ էին քրիստոնեայ անձինք՝ հասարակ ժամկոչից սկսած մինչև բարձրը...

Գեղանուշի մայրը գիւղից միշտ գալիս էր աղջկան այցելում. երբեմն տանում էր իբրև հիւանդի մօտը պահում։ Գեղանուշը երկար չէր դիմանում, հէնց որ իրան թեթև էր զգում, երեխաների պատճառով վերադառնում էր քաղաք։ Նկատելի էր, որ թոքերի մէջ ցաւը բուն է դրել, ոտի վրայ մոմի պէս հալւում էր։ Երբ դրութիւնը լրջացաւ, մայրը եկաւ ստիպելով տարաւ գիւղը։ Միշտ այցելում էի նրան և երեխանց կողմից միամտացնում։ Այնքան կլանուած էր մայրական հոգսով, որ զառանցանքների մէջ էլ զաւակներիս անուններն էր տալիս։ Լեռան պէս ջանը 8 ամիս հազիւ դիմացաւ անտանելի մթնոլորտում, վիշտն ու դառն մտածութիւնները թոքախտի տիրացրին։ Մի ամիս հիւանդութեան մահճում տանջուելուց ետ նահատակ աղջիկը արդար շունչը փչելով հրաժեշտ տուեց այս փուչ աշխարհին։ Կսկծալի սրտով հողը դրի մուրազաչոր Գեղանուշին, որ յանդգնութիւն ունեցաւ սրտի թելադրութեան լսել և ոչ հասարակութեան փտած կարգին։

Հակառակորդներս Գեղանուշի մահից ետն էլ հանգիստ չը թողին, շարունակեցին թունաւորել կեանքս։ Իշխաններից վախենալով փողոցում ոչ ոք ինձ չէր բարևում։ Գործակալից սկսած մինչև թեմական Առաջնորդը իբրև հայ եկեղեցու անարատութեան պաշտպաններ—ինձ մերժելով մերժում էին, երբ հովուելու ժողովուրդ էի խնդրում։ Ես կնկամեռ, հայրս կնկամեռ, զաւակներս անխնամ։ Ես որոնում էի մի վճիռ, որ հօրս սարսափեցնում էր։ Կամենում էի փարաջէս հանել, որ պսակուելով երեխաներիս համար կարող-եփող մի կին բերեմ։ Խեղճ հայրս գերադասում էր գլուխն սպանել, քան թէ ինձ կարգալոյծ տեսնել։

Հօրս մաքուր կեանքն ինձ օրինակ էր, նա իրա ծեր տեղով օտար կնիկ տանը պահել չէր յօժարւում, որ ճոշանքից ազատ մնայ, ինքն էր միշտ կերակուր եփում, թոռներին քնացնում, ջուր տաքացնում նրանց լողացնում։ Երբ տեսաւ որ իմ պսակուելն անկարելի է, երեխանց խնամող բերելու համար, ինքն ակամայ երրորդ անգամ պսակուեց գիւղացի մի այրի կնոջ հետ, որ ինքն էլ անտէր ու անխնամ վիճակից ազատուի։

Կնոջս մահից ետ անցել էր 3 տարի, ես դժոխքի կրակներում այրուելիս։ Իսկ Գեղանուշի մահով իմ մէջ մեռել էր սէր ու ցանկութիւն ասած բաները, թէև ընդամենը 32 տարեկան էի։ Ինձ տանջողն էր երեխաներիս ապրուստի հոգսը։ Հոգևոր իշխանութիւնը սպասում էր, որ չոքեմ, մեղայ գամ Յաջորդի կամ Առաջնորդի առաջ. այդ պայմանով միայն խոստանում էին ծուխ տալ հովուելու. փարաջէս դրա համար չէին վերցնում։ Իսկ ես ինձ ամենևին մեղաւոր չէի զգում։ Նրանց առաջարկից խոր վիրաւորուած ինքս էի ուզում փարաջէս հանել, բայց հայրս ոտս ընկած աղաչում էր, որ այսպիսի բան չանեմ։ Նա համբերող, փորձուած մարդ էր. հաւատացած էր որ հանգամանքները միշտ այսպէս ներհակ չեն մնայ։

Մտածեցի հեռանալ Թիֆլիսի նահանգից, զաւակներիս համար վաստակ անել կամ տէրտէրութեամբ կամ այլ ազնիւ միջոցով։ Երեխանցս թողի հօրս ու խորթ մօրս յուսով, զէնքերս կապեցի, ձին նստայ ու Աստծու անունը տալով՝ ճամբայ ընկայ։ Ռսի հողում ուր էլ գնայի, հալածանքներն ինձ հետևելու էին. ուստի անցայ տաճկի հողը. փարաջէս ծալած դրել էի խուրջինի մէջ. 1869 թ. էր, հասայ Կարին, գործ գտնելու համար սրաննրան դիմեցի առանց ով լինելս յայտնելու։ Ռսերէնի գիտութիւնս այստեղ պէտք եկաւ, պաշտօն գտայ անգլիական կոնսուլի մօտ. նա տաճկական գաւառներից մի քանի եկամուտներ էր ժողովում պարտքի հաշուին։ Թիւրքերից, քիւրդերից տուրքեր էի հաւա-

*) Տես «Համբաւաբեր» № 43։

տալովգնացի Գիւմրուրդա հովուելու։ Սակայն երկու ամիս չըքաշած, լսեցի որ Առաջնորդը նոր թուղթ է գրել Ախալցխայի Յաջորդին հնար մտածել Գիւմրուրդայի ծուխը ըմբոստիս ձեռից առնելու։ Ամիս չըքաշեց, Գիւմրուրդայի երկու տիրացուի քահանայ ձեռնադրեցին առանց ժողովրդի կամքը հարցնելու ու իմ տեղը դրբին։ Ես մնացի հրաժարուած ու պարապ։

Հեշտ բան չէր համբերել այդ վիրաւորանքներին, մէկ ուզում էի գայլի պէս դատաստանս իմ ձեռով անել. կուռս ուժեղ, թուրըս կտրուկ—դժուար չէր ամենից վրէժ հանելը. բաւական էր, որ գժութեանս երակը կանգնած վայրկեանին սրտիս լսէի—բայց որ մտածում էի որբերիս ու ծերունի հօրս մասին, թևերս թուլանում էին։

Ինձ համար էլ կանայք գոյութիւն չունէին. Գեղանուշը գերեզման իջնելով իմ սէրն էլ տարել էր հետը։ Արարչին յայտնի էր, թէ հին մեղաւորս որքան հաւատարիմ էի ուխտիս։ Ապրում էի գիւղում և ամենին օգնում կարողութեանս չափ, տղամարդկանց ընդունելով իբրև եղբայրներ, իսկ կանանց իբրև քոյրեր։ Ազատ ժամանակս անց էի կացնում Ս. Գիրք կարդալով. միակ մխիթարութիւնս այդ էր։

Քաղաք եկած միջոցին սրտով փափագում էի, մի անգամ պատարագ անել և ճաշակուել, Գործակալը իրաւունք չէր տալիս։ Դաղէշցի ծերունի Գալօ կար, գիւղի Տէր Մարտիրոսը նրան չէր ճաշակում. «դու մեղաւոր ես, ասում էր, թիւրքեր շատ ես սպանել»։ Երևի յիմար Տէր Մարտիրոսը կը ցանկանար, որ Գալօն ձեռները կրծքին խաչէր, գող թիւրքերը նրան սպանէին։ 1866 թ. անճար ծերունին ինձ հրաւիրեց, գնացի ճաշակեցի։ Այժմ ես էի ընկել Գալօյի օրը. չէին թողում ճաշակուեմ։

Մատթէոս Կաթողիկոսը, որի ժամանակից իմ դժբաղդութիւնն սկսուել էր, վաղուց չըկար. նրա տեղ բազմած էր Գէորգ Դ. Հայրս շարունակ սփոփում էր, որ մեղայական գրեմ ու Վեհից ներումն խնդրեմ. ես ասում էի յամառօրէն՝

—Ես մեղաւոր չեմ, ինչու մեղայ գոչեմ։

1874 թ. հայրս արտասուքն աչքերին հարկադրեց ինձ, որ հետը գնամ Ս. Էջմիածին։ Գնացի։ Միաբաններից ոմանք առաջարկեցին, որ իբրև յանցաւոր զաւակ ծնկաչոք գնամ հայ եկեղեցու Պետից ներումն խնդրեմ մեղայ գոչելով։ Հոգիս ըմբոստացած բողոքում էր, որ այդպիսի նուաստութիւն չանեմ։ Բարձրացանք Վեհարանի սանդուխը. հայրս շէմքին հասնելով չոքեց, որ չոքէչոք գնայ Վեհի աջն առնի։

—Կմբռպետ վարժապետ, ասեց Վեհը, բարեպաշտութիւնդ ինձ յայտնի է, առաջ արի, յետոյ չոքիր։

Հայրս իբրև խիստ երկիւղած հայ անպատճառ կամենում էր ծնկաչոք գնալ. ես մի կերպ թևից բռնելով հասցրի Վեհի առաջ։ Հայրս սրտած խնդրուածք ունէր, պիտի ասէր, որ Վեհն ինձ ներէր, բայց «Վեհափառ Տէր» բառերը հազիւ արտասանելով լեզուն կարկամուեց, շարունակել անկարող եղաւ, անճարակ դրութեան մէջ կրկնում էր «Վեհափառ Տէր» բառերը։ Այն ժամանակ ես ասի. «Վեհափառ Տէր, հայրս գրելու մէջ քաջ է, խօսելու մէջ թոյլ, իսկ ես ընդհակառակը»։

Զոքեցի, Վեհի աջն առայ ու շարունակեցի խօսքս.

—Իբրև Մայր Աթոռի ջերմեռանդ զաւակ պատրաստ եմ Վեհիդ դարշապարը համբուրելու, բայց մեղայ չեմ գոչիլ, ինչպէս հայրս է ցանկանում, որովհետև ես ինձ մեղաւոր չեմ զգում։ Աստուած վկայ է, որ այսքան տարի անիրաւ տեղն եմ հալածուած։

Այս համարձակ պատասխանի վրայ հայրս բոլորովին սփաթնեց։ Իսկ Վեհը փառահեղ դէմքը խոժոռելով ասեց.

—Դու ըմբոստ ես եղել Առաջնորդի մօտ, ինձ մօտ էլ նոյն կերպ ես պահում քեզ։

—Որովհետև ստել չեմ կամենում, Վեհափառ Տէր, պատասխանեցի ես։

Վեհարանից իջնելիս դառնացած հոգով նզովում էի գոյութիւն ունեցող անգործնական, կեանքի համար հնացած կարգերը, որոնց շնորհով անմեղ Գեղանուշները գերեզմանի ապրանք պիտի դառնան, ինձպէսներն էլ պիտի անմխիթար տառապեն զուր տեղ։

Տեղեկացրին քիչ յետոյ, որ Վեհը համարձակ պատասխանիցս վրդովուած, բանաւոր հրաման էր արձակել կարգալոյծ անել ինձ։

Վանքի բակում լսելով այդ որոշումը բոլորովին հանգիստ ասի.

—Շատ փոյթս չէ, փառք կըտամ Աստծուն, երբ փարաջէն ծալելով մի կողմ կըդնեմ ու իբրև աշխարհիկ մարդ կապրեմ երջանիկ, ճակատիս քրտինքով ու կապրեցնեմ զաւակներիս. ոչ կուռս է պակաս, ոչ ոտս։

Իսկ ինչ որ հօրս հալն էր, Աստուած ոչ նշանց տայ, դողդողալով բարձրացաւ Վեհի մօտ, ոտներն ընկնելով, աղաչելով արձակած հրամանը յետ վերցնել տուեց։ Էջմիածնից տխուր տրտում դարձայ որբերիս մօտ և շարունակեցի Ս. Գիրքն ուսումնասիրելը։

Հայր ու որդի մեզ հալածողների դատաստանը թողել էինք Արարչին։ Քիչ ժամանակի ընթացքում նրանցից մի քանիսը չարաչար մահով վերջացան։ Այս բանը ժողովրդին ցնցելով կուրութիւնից հանեց։ Իմ մաքուր կենցաղը յայտնի դարձաւ ամենին։ Ժողովուրդը չուզեց յաւիտեան անիրաւ մնալ։ Քաղաքի բնակիչները զգացել էին, որ արդարութիւնն իմ կողմն է։ Խղճի խայթից ազատուելու համար որոշել էին ինձ հրաւիրել քաղաքի եկեղեցին չորրորդ քահանայի տեղ։ Խնդիրներ էին կազմել, ստորագրելով ուղարկել Առաջնորդին առանձին, Կաթողիկոսին առանձին, շեշտելով որ իրանք սխալուած են եղել Տէր Ստեփանին հալածելիս կամ նրա դէմ բողոքներ տալիս։ Այդ գրութիւնները եղել են, ես գիւղում անտեղեակ։

Մէկ օր, երբ զբաղուած էի Ս. Գրքի ընթերցանութեամբ, յանկարծ յայտնեցին, որ մի խումբ քաղաքացիք կամենում են ինձ հետ խօսել։

—Առաջնորդից թոյլտուութիւն ստացել ենք, դիմեցին նրանք հօրս, այժմ եկել ենք խնդրենք Տէր Ստեփանին, որ դառնայ Ա. քաղաքում ծխական քահանայ։

Այսպէս խօսող պատգամաւորները իմ նախկին կատաղի թշնամիներս էին։

Հայրս անչափ ուրախ էր, որ արդարութիւնը յաղթեց։ Որբերս վերցրած տեղափոխուեցի այստեղ։ Հայրս հանգիստ ապրեց մինչև 1889 թ., ողորմի իրան, լաւ մարդ էր. բայց իմ որդին, որ այժմ տեղիս դպրոցների հոգաբարձութեան նախագահն է, արդեօք արժանի կըհամարի ինձ, հին մեղաւորիս ողորմիս տալու—այդ չըգիտեմ»։

Այսպէս վերջացրեց 1893 թ. յունիսին իրա զրոյցը Տէր Ստեփանը, որ 1905 թ. աշնան արդէն ողջերի թւում չըկար։

Քամալեանց Ս.

## Մատենախօսութիւն

### «ՓՆՋԻԿ», ԱԶԱՏ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Լոյս են տեսել չորս տետրակ մանկական երգեր Ազատ Մանուկեանի, խմբագրութեամբ երաժիշտ Ռ. Մելիքեանի, հրատարակութեամբ պ. Լ. Եւանգուլեանի. չապիկների երեսի նկարները նկարիչ Վ. Սուրէնեանինն են։

Ա. Մանուկեանը յայտնի երաժիշտ-մանկավարժ է. նա լաւ է ճանաչում մանկական հոգին, ճաշակը, պահանջները և գեղարուեստական պատրաստութիւնը, ուստի կարողացել է այդ բոլորին համապատասխան յաջող աշխատութիւն գրել, փայլուն կերպով լուծելով այն ծանր խնդիրներից մինը, և ցուցէ ամենա-

կարևորներից մինը, որոնք հազարներով կանգնած են մեր հայ երաժշտներիս առաջ և սպասում են լուծման։

Նախ և առաջ ուշադրութիւն են գրաւում երեք գեղեցիկ երգ, հայոց ժողովրդական երգերի երանգով (կոլորիտ) գրուած. «Արագիլ բարով եկար (Ա. տետր. № 7), «Էյ ջան անցան» (Գ տետր № 6) և «Եկաւ գարուն» (Դ տետր № 3)։

Հետաքրքրական է երաժշտական ծրագրի (Programm musik) կողմից «Ղու, դու, դու» (Բ տետր № 5) երգը, որի մէջ ներկայացրած են նմանաձայների միջոցով թռչունների կանչը և թռիչքը դէպի վեր։

Նոյն տետրի № 1 «Ծիծեռնակը բուն է շինում», գրուած «բէ-փոքր» (f-moll) ձայնատեսակով, յուզիչ և սրտաշարժ երգ է։ Եթէ հետևենք եղանակի ալէկերպ գծին, անշուշտ նմանութիւն կըգտնենք այդ գծի և ծիծեռնակի օդի մէջ ճախրելուն, իսկ ներդաշնակութիւնը յիշեցնում է թևերի շարժումը։

Երաժշտական ծրագրին հետևելը մօտեցնում է այդ երգը հայ ժողովրդական երգին, վասն զի այդ կողմը շատ բնական է մեր հայ երգերին, և հասնում է այնտեղ բարձր աստիճանի զարգացման։

Իր արտաքին ձևով մօտենում է ժողովրդական ոճին (Stil) նաև «Լուսինն ելաւ էն սարէն» (№ 5 տետր Բ), լինելով իւր առաջին մասում ծանր և երկրորդում աշխոյժ։

Ինքնուրոյն տպաւորութիւն են թողնում «Կաքաւիկ»-ը (Գ տետր № 5) և «Պապի տատի»-ն (Ա. տ. № 4) իրենց հետաքրքրական շեշտերով (Accente) և «Լուսը լուացաւ» իւր վերջին յանգով (Каденція)։

Իսկական տաղանդ ցոյց է տուել երաժշտագրողը (композиторъ) սքանչելի «Բարի լուսի» (Գ տ. № 1) երգի մէջ, ինկատի ունենալով թէ մեղեդին (եղանակը), է—փոքր (d-moll) ձայնատեսակով գրուած, թէ ներդաշնակութիւնը և թէ գեղարուեստական նկարագրութիւնը այդ քնքոյշ ժլամղձոտ արամադրութեանը, որ մենք ստանում ենք արշալոյսի բացուելու առաջին վայրկեաններին։

Ցանկանալի կը լինէր, որ ամանակի (Tempo) չափերը հայերէն կամ իտալերէն տերմիններով լինէին նշանակուած, և նոյնն էլ ույժի (Dinamik) նշանների վերաբերմամբ։

Վերջը մի քանի խօսք տակտային գծի մասին։ Մեր հայոց թէ եկեղեցական և թէ ժողովրդական երգերի մէջ երաժշտական շեշտը և վանկի շեշտը համարեա միշտ իրար համապատասխան են. նկատւում է անբաժանելի մի կապ, և այդ նըկատւում է նաև Ա. Մանուկեանի երգերում. բայց ձայնագրելիս մի քանի դէպքում երաժշտագրողը տակտային գծերը այնպէս է դետեղել, որ մեղեդին ստանում է ուրիշ շեշտեր, որոնք եղանակի պարզութեանը խանգարում են. զոր օրինակ «Պապի տատի չալ հաւիկ» եղանակի շեշտը և վանկերի շեշտերը իրար համապատասխանում են, այսինքն շեշտւում են երկրորդ, չորրորդ և եօթներորդ վանկերը, բայց ձայնագրուած է այնպէս, որ մինչ խօսքերը չիմանալով պէտք է եղանակը նուագելիս շեշտէ առաջին, երրորդ, հինգերորդ և եօթներորդ վանկերը, որ երաժշտագրողի ուղածին չի համապատասխանում։

Այս սխալը ես նկատել եմ յաճախ մեր հայ երաժշտագրութեան մէջ, սակայն այդ առթիւ մի ուրիշ անգամ։

Իսկ առայժմ ցանկանալով պ. Ազատ Մանուկեանին յաջողութիւն, սիրում ենք հաւատալ, որ այդ գեղեցիկ երգերը բացի հայ դպրոցներից մուտք կը գործեն և հայ ընտանիքներում, մանաւանդ այն ընտանիքներում, որոնց երեխաները զուրկ են հայ մանկական երգերից։

Ովսաննա Տէր-Գրիգորեանց

Թիֆլիս, 1916.

---

# ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

## «ՅՈ՛ ԵՐԹԱՍ»

Հոկտ. 24-ին հայ Դրամատիկ ընկերութեան խումբը ներկայացրեց Սամարինի «Յո՞ երթաս» դրաման, թարգմ. Լ. Բարայեանի։

Օր. Իզաբէլլա Բալանթար կատարեց Եւնիկէ ստրկուհու դերը։ Նրբութիւն և քնքշութիւն պահանջող այդ դերը օրիորդը տարաւ ինքնայատուկ շնորհքով և յուզումով։

Պետրոնիոսի փափուկ և դժուարամատչելի դերը յաջողութեամբ տարաւ պ. Սեւումեանը, ինչպէս նաև Վինիցիոսում պ. Փափազեան, երկուսն էլ ունէին կիրթ և մշակուած շարժումներ. հռովմէական հին հերոսների առանձնայատուկ հոգեբանութիւնը նրանք կարողացան վարպետօրէն պատկերացնել։

Յաջող էին նաև տիկ. Սեւումեան, պ. պ. Բերոյեան, Միրզոյեան, Աւետեան և Մանուէլեան՝ Լիգիայի, Տիգելինոսի, Ներոնի, Քիլինոդէսի և Ֆարիոսի դերերում։

Մնացածները կարողացան պահպանել անսամբլը։

Նկատողութեան արժանի էր միայն պիէսի անյաջող թարգմանութիւնը, ուր լեզուն իւր խորդաբորդութեամբ ականջ է ծակում։

Հետևեալ երկուշաբթի խումբը կը ներկայացնէ «Նապոլէօնի մահը» և «Ցնորքները»։

---

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

---

*Մուշ շրջանի «Թիլ» գիւղի բնակիչ՝ Բարսեղ Մխիթարեանի որդին Մ. Բարսեղեանը, որ այժմ ողջ-առողջ գտնւում է Աթէնքում, մի նամակով խնդրում է Հ. Կ. Կոմիտէին, տեղեկութիւն տալ իր ընտանիքի և միրձաւորների վիճակի մասին։ Կոմիտէն այսու խնդրում է Մշեցի բոլոր այն հայրենակիցներին, որոնք ունէ տեղեկութիւն ունին յիշեալ Մ. Բարսեղեանի միրձաւորների մասին, փութան հաղորդել նրան, հետեւեալ հասցէով.* Monsieur M. Parseghian, chez Messieurs Stepan Iplisjian, passage Hegroponte Athènes (Gréce).

---

# Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլայեւնայի Գլխաւոր Կոմիտէի

*նպաստներով հայ փախստական երեխաների համար բացուած և բացուելիք դպրոցների համար հարկաւոր են*

# ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐ-ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆԵՐ

*(Թիւրքահայ և ռուսահայ)*

*Դպրոցների գործը ղեկավարելու համար ընտրուած* **ԴՊՐՈՑԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ** *որոշելով կազմել ուսուցչական ցանկ, առաջարկում է ցանկացողներին պաշտօնավարել վերոյիշեալ դպրոցներում, փութալ յայտնել Խորհրդին մանրամասն տեղեկութիւններ թէ որտեղից են, քանի տարեկան են, քանի տարի ուսուցչական պաշտօն են վարել, որ դպրոցում են աւարտել իրենց ուսումը։ Պէտք է դիմել այս հասցէով՝ «Հայ Գաղթականական Ուսումնարանների Դպրոցական Խորհրդին»,* Училищному Совѣту школъ для дѣтей бѣженцевъ, Тифлисъ, Абасъ-Абадская, 7.

---

## Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*Հրատարակութեամբ լոյս տեսաւ և վաճառւում է*

**ԱՐԻՍՏԱԿԷՍ ՓԱՐԵՄՈՒԶԵԱՆԻ**

## „ԹԷ ԻՆՉՊԷՍ ՊԷՏՔ Է ԳՐԱԴԱՐԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆՆԵՐ ՀԻՄՆԵԼ ԵՒ ԿԱՌԱՎԱՐԵԼ"

*ԳՐՔՈՅԿԸ*

ԳԻՆԸ 10 ԿՈՊ.

*Դիմել Կ. Հ. Բ. Ը թեան գրադարանին՝* Абасъ-Абадская 7. *կամ թէ «Գիր» գրախանութին,* Вельяминовская улица.

---

*Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած*

## *կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի*

*արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և դիւանական գրքեր։*

*Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։*

---

*ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ*

1917 Թ. **„ԳՈՐԾ"** 1917 Թ.

Գրական, գիտական, հասարակական եւ քաղաքական ամսագիր

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ* { Տարեկան . . . . . . . . 15 ր.
Կէս տարուանը . . . . . . 8 ր.

ԱՌԱՆՁԻՆ ՀԱՄԱՐԸ ԱՐԺԷ 2 ՌՈՒԲԼԻ

*Նիւթեր և բաժանորդագին ուղարկել հետեւեալ հասցէով՝*

Баку, редакція „ГОРЦЪ", Николаевская, 33.

*Առաջին համարը լոյս կը տեսնի դեկտեմբերին մօտաւորապէս հետեւեալ բովանդակութեամբ.*

*Զարէլ Եսայեան՝ «Վերջին բաժակը», Յ. Յովհաննիսեան՝ «Ծովափին» (բանաստ.), Յովհ. Թումանեան՝ «Մոծակն ու Մրջիւնը» (բանաստ.), Սոֆոկլէս՝ «Անտիգոնէ» (Թարգմ. Տ. Յովհաննիսեանի), Շարլ Բոդլէր՝ «Փոքրիկ արձակ պօէմներ» (Թարգմ. Վ. Տէրեանի), Վ. Տէրեան՝ «Երկու սոնէտ» (բանաստ.), Դ. Դէմիրճեան՝ «Հին երգերից» (բանաստ.), Վ. Փափազեան՝ (պատմ.), Ծ. Թորգոմեան՝ «Լաչակս գլխուդ ըլլա թող», Յ. Մանանդեան՝ «Ազգութեան գաղափարը», Դ. Անանուն՝ «Փորձութեան ժամին», Անկախ՝ «Յուշեր իմ անցեալից», Ե. քահ. Գեղամեանց՝ «Պետրոս Շանշեան», Ե. Ֆրանգեան՝ «Է. Մախի փիլիսոփայութիւնը», Յ. Խանզադեան՝ «Ռափայէլ Պատկանեանը և իր ընթերցողները»։ Կը լինեն նաև յօդուածներ՝ Լէօի, Ն. Աղբալեանի, Լ. Աթաբէկեանի, Ա. Չիլինգարեանի, Բ. Իշխանեանի, Յ. Լազարեանի, Ա. Մայիլեանի և այլոց։*

*Խմբագիր՝* Կ. ԿՐԱՍԻԼՆԻԿԵԱՆ
*Հրատարակիչ՝* Ս. ՏԷՐ-ՂԱԶԱՐԵԱՆ

3—1

---

**Продолжается подписка на 1916 годъ**

на еженедѣльный общественно-политическій и литературный журналъ посвященный вопросамъ армянской жизни.

## „Армянскій Вѣстникъ"

(первый годъ)

издаваемый въ Москвѣ Ив. Т. Амировымъ при участіи видныхъ русскихъ и армянскихъ литераторовъ и общественныхъ дѣятелей.

Подписная цѣна

Въ Россіи: на 1 годъ 6 руб., на 6 мѣс. 4 руб. на 3 мѣс. 2 руб. 50 коп., на 1 мѣс. 1 р. 25 коп. За границу вдвое. Цѣна отдѣльнаго номера 20 коп.

Журналъ будетъ выходитъ по воскресеньямъ. Адресъ редакціи и конторы журнала „Армянскій Вѣстникъ": Москва, Остоженка, 2-й Ильинскій пер., д. 3. кв. 2.

Редакторъ издатель

Иванъ Томасовичъ Амировъ

*Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի* Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.

# ՅԱՒԵԼՈՒԱԾ № 44

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Բաշ-գիւղից Ալէքսանդրապոլ փոխադրուած որբ երեխաների ցուցակը*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայրը | Տարիքը | Գրագէտ | Ծնողք կա՞ն | ԾՆՈՂԱՑ ՏԵՂԸ |
|---|---|---|---|---|---|---|
| 58 | Մուշեղեան Յովակիմ | | 4 | ոչ | ոչ | |
| 59 | Հայրիկեան Հրանտ | | 5 | | | |
| 60 | Մարտիրոսեան Անուշաւան | | 5 | | | |
| 61 | Աւետիսեան Յարութիւն | Դշօ | 7 | ոչ | ոչ | |
| 62 | Մուշեղեան Յովսէփ | Վան | 5 | » | » | |
| 63 | Մարտիրոսեան Յովհաննէս | Շատախ | 9 | այո | » | |
| 64 | Ադոյեան Երուանդ | Գիսկա | 9 | ոչ | մայր | Թալա-գիւղ |
| 65 | Զաքարեան Յարութիւն | Զորեվանք | 4 | » | ոչ | |
| 66 | Յարութիւնեան Իսկուհի | Պատիկ գիւղ | 14 | այո | մայր | Բարվանսարա |
| 67 | Յարութիւնեան Թանգօ | " | 12 | » | » | « |
| 68 | » Նուշիկ | » | 3 | ոչ | » | " |
| 69 | Ասատուրեան Գեղուհի | Մխկներ | 14 | այո | մայր | Վան |
| 70 | Պօղոսեան Շուշանիկ | » | 13 | այո | մայր | Բարվանսարա |
| 71 | Ազիզեան Մարիամ | » | 8 | » | հայր | |
| 72 | Վարդանեան Նարգիզ | " | 13 | " | ոչ | |
| 73 | Խաչոյեան Այթուն | Քուէշ | 9 | » | » | Սև-Քար |
| 74 | Մախսուտեան Մարգարիտ | Արբենդ | 12 | ոչ | հայր | » |
| 75 | Աւետիսեան Ազնիւ | Բերկրի | 14 | այո | մայր | " |
| 76 | » Ռէհան | | 11 | » | » | « |
| 77 | Գասպարեան Ոսկեխան | Բերկրի | 12 | » | մայր | |
| 78 | Գալստեան Աղաւնի | Բերկրի | 14 | » | ոչ | |
| 79 | Բաղդասարեան Ոսկէհատ | Քուէլա | 9 | ոչ | " | |
| 80 | Մանուկեան Սաթենիկ | Բերդակ | 9 | ոչ | » | |
| 81 | " Ազատուհի | » | 5 | » | " | |
| 82 | Մուրադեան Սիրարբի | Հնդստան | 11 | » | » | |
| 83 | Օհանէսեան Թագուհի | Վանդնից | 11 | » | » | |
| 84 | Սարգսեան Հրանոյշ | Հայոց Ձոր | 11 | » | » | |
| 85 | » Նարգիզ | » | 9 | " | » | |
| 86 | Տիգրանեան Իսկուհի | Սեան | 5 | » | մայր | Իգդիր |
| 87 | Յովհաննիսեան Մայրիկ | Վան | 5 | " | " | Վան |
| 88 | Խաչիկեան Անժէլ | Վան | 9 | այո | ոչ | |
| 89 | Աբրահամեան Վարսենիկ | | 5 | ոչ | " | |
| 90 | Միհրանեան Լուսիկ | Պատիկ գիւղ | 8 | այո | ոչ | |
| 91 | Պետրոսեան Ազնիւ | Բաշկալա | 6 | ոչ | | |
| 92 | Մարտիրոսեան Աղաւնի | Խոսպա | 9 | ոչ | ոչ | |
| 93 | Մանուկեան Նուպար | Գոմեր | 9 | " | մայր | Վան |
| 94 | Գէորգեան Ալմօ | Քօչանս | 10 | » | ոչ | |
| 95 | Ասատուրեան Թագուհի | Գօշանվանք | 7 | » | » | |
| 96 | Խաչատրեան Նոյեմզար | Ցաղընձու | 6 | » | մայր | Սալմաստ |
| 97 | Լեւոնեան Հայկանուշ | Գաւաշ | 7 | » | մայր | Էջմիածին |
| 98 | Սիմօնեան Կարաւ | Վան | 5 | » | ոչ | |
| 99 | Մելքոնեան Մարգարիտ | Խժէժ | 6 | « | մայր | Էջմիածին |
| 100 | Մովսէսեան Զարուհի | Վանձեղ | 5 | » | — | |
| 101 | Աւետիսեան Ջէրօ | Խմրկից | 7 | » | — | |
| 102 | Խաչիկեան Գինօ | Միգա | 6 | " | — | |
| 103 | Հայրեան Լէլօ | Քուէլ | 4 | " | — | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 104 | Շողակաթ | Բերկրի | 3 | » | — | — | — |
| 105 | Նունուշ | Վան | 3 | » | | — | |
| 106 | Սիրանոյշ | Վան | 3 | » | | — | |
| 107 | Եղսօ | — | 3 | « | | — | |
| 108 | Յարութիւնեան Նեկտար | Պիթլիս | 5 | „ | | — | |
| 109 | Յակոբեան Վարսենիկ | Խորգոմ | 6 | » | մայր | | Էջմիածին |
| 110 | Մկրտչեան Մարիամ | Խիզան | 7 | » | | — | |
| 111 | Յովհաննիսեան Նուպար | Կուտուբաշ | 7 | „ | | — | |
| 112 | Թորոսեան Մաքրուհի | — | 7 | » | | — | |
| 113 | Գէորգեան Մարգարիտ | Խժէժ | 8 | » | | | |
| 114 | Մովսէսեան Հայկանուշ | Կվէրա | 9 | „ | | | |
| 115 | Գրիգորեան Վարդիհեր | Կառկառ | 6 | » | | | |
| 116 | Ղազարեան Ոսկի | Կանճառ | 6 | » | | | |
| 117 | Պօղոսեան Զինա | Խլաթ | 9 | „ | | | |
| 118 | Եղոյեան Սուսան | Պօղոսա | 7 | » | | | |
| 119 | Աւետիսեան Էթար | | 7 | » | | | |

Կ. Հ. Բ. Ընկ. Նոր-Բայազէդի Ա. Բ և Գ. որբանոցների որբերի անուանացուցակ

1916 թ. սեպտմբերի 18-ին

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Արտաշէս Վարդանեան | Վան | 13 | — | այո | Հօրեղբայր, | Օրդակլու | |
| 2 | Եսայի Իսահակեան | » | 13 | — | » | — | — | |
| 3 | Խոսրով Մեսրոպեան | „ | 8 | մայր | » | — | — | |
| 4 | Սարգիս „ | » | 6 | » | ոչ | — | — | |
| 5 | Սեդրաք Աւետիսեան | » | 7 | — | » | Եղբայր, | Բայազէդ | |
| 6 | Սիրուն Շահինեան | » | 9 | մայր | այո | — | — | |
| 7 | Արփենիկ Սարգիսեան | » | 9 | „ | ոչ | — | — | |
| 8 | Արշակ Տօնոյեան | Բիթլիս | 15 | — | այո | — | — | |
| 9 | Ջաւահիր Եղոյեան | Բլուր | 14 | — | » | Հօրեղբայր, | Քաղբիկ | |
| 0 | Արեգնազան | » | 12 | — | „ | » | » | |
| 11 | Վարազդատ Տէր-Վահանեան | Վան | 9 | մայր | » | — | — | |
| 12 | Գարմիլէ » | » | 11 | » | „ | — | — | |
| 13 | Վարդգէս Սիմօնեան | » | 13 | — | » | Քոյր | Կարանլուղ | |
| 14 | Յակոբ Մարտիրոսեան | Կեմ | 14 | — | » | Եղբայր, | Ամերիկա | |
| 15 | Դուրգէն Տիգրանեան | Բերդակ | 11 | հայր | » | — | — | Մեկնած |
| 16 | Միհրան „ | » | 13 | » | » | — | — | » |
| 17 | Լևոն „ | » | 12 | „ | „ | — | — | » |
| 18 | Պետրոս Սիմօնեան | „ | 13 | մայր | . | — | — | |
| 19 | Միհրան Մխիթարեան | » | 12 | » | » | — | — | |
| 20 | Ստեփան „ | » | 7 | » | ոչ | — | — | |
| 21 | Յարութիւն Գէորգեան | » | 10 | հայր | այո | — | — | |
| 22 | Վարդանոյշ » | » | 8 | „ | ոչ | — | | |
| 23 | Տիգրան Սիափոշեան | Բիթլիս, Ծղ. | 13 | — | այո | Եղբօր կին, | Ալզաբենդ | |
| 24 | Պայծառ Նաքրոյեան | » | 6 | — | ոչ | Հօրեղբայր | „ | |
| 25 | Սեդրաք Խաչիկեան | » | 10 | — | այո | Մօրեղբայր | » | |
| 26 | Ալմաստ Սափարեան | » | 9 | մայր | » | — | — | |
| 27 | Ալէքսան Հաարէթեան | » | 10 | » | ոչ | — | — | |
| 28 | Աւետիս Տէր Աբգարեան | Վան | 12 | — | այո | Քոյր, | Բայազէդ | |
| 29 | Մուրադ Մանուկեան | » | » | — | » | Հօրեղբայր. | Դշլաղ | |
| 20 | Յակոբ Վարդանեան | » | . | հայր | » | — | — | |
| 31 | Յովհաննէս Խեփոյեան | Կարճկան | » | — | » | Հօրեղբօր կին, | Զօր. | |
| 32 | Զարուհի » | » | 14 | — | » | » | „ | |
| 33 | Սահակ Արշակեան | Բիթլիս | 12 | — | այո | Հօրեղբայր, | Զոչու | |

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 34 | Աբրահամ Արշակեան | » | 10 | — | այո | « | » | |
| 35 | Առաքել Գէորգեան | Վան | 13 | մայր | » | — | — | |
| 36 | Նշան » | » | 5 | " | ոչ | — | — | |
| 37 | Խաչատուր Ստեփանեան | Բիթլիս | 10 | — | այո | Եղբայր, | Բայազէդ | |
| 38 | Այվազ " | » | 9 | — | « | » | » | |
| 39 | Խաչատուր Յարութիւնեան | » | 14 | — | » | Եղբայր, | Քերեմենդ | |
| 40 | Երուանդ Տէր-Մելքոնեան | " | 13 | մայր | » | — | — | |
| 41 | Կարապետ Մկրտչեան | " | 12 | » | » | — | — | |
| 42 | Սահակ Մանուկեան | Խասանինց | 11 | — | » | Հօրեղբայր, | Ղարալուղ | |
| 43 | Հմայեակ Յակոբեան | Խոլիկ | 14 | — | " | » | Օրդակլու | |
| 44 | Մարգար Եղոյեան | " | 8 | — | " | Եղբօր կին | « | |
| 45 | Յարութիւն Սիմոնեան | » | 10 | — | ոչ | Հօրեղբայր, | Բայազէդ | |
| 46 | Սիմոն Մելքոնեան | " | 10 | — | այո | " | Զոչո | |
| 47 | Սառա » | " | 8 | — | ,, | " | « | |
| 48 | Ազատ Մանասեան | » | 6 | — | ոչ | Հօրաքոյր | » | |
| 49 | Սարգիս Տէր-Նահապետեան | " | 13 | — | այո | Հօրեղբայր, | Ախտա | |
| 50 | Թէոս Պետրոսեան | Վան | 10 | հայր | ,, | — | — | |
| 51 | Ջաւէն » | » | 6 | " | ոչ | — | — | |
| 52 | Յարութիւն Բողոյեան | Բիթլիս | 12 | — | այո | Եղբայր, | Երկիր | |
| 53 | Արէլ » | » | 6 | — | ոչ | — | — | |
| 54 | Հմայեակ Խաչոյեան | ,, | 9 | մայր | այո | — | — | |
| 55 | Վարդան Մովսիսեան | ,, | 10 | — | " | Եղբայր, | Ղրխբուլախ | |
| 56 | Աշխէն Յակոբեան | Համարա | 10 | — | ոչ | Հօրեղբայր. | Նորադաշ | |
| 57 | Միհրան Գորոլեան | ,, | 5 | — | ,, | Մօրաքոյր, | Բայազէդ | |
| 58 | Յարութիւն Ղարիբեան | Վան | 6 | մայր | ,, | — | — | |
| 59 | Աղասի » | ,, | 5 | — | ,, | Հօրեղբայր, | Գենզերի | |
| 60 | Ղազար Մանուկեան | ,, | 10 | — | այո | Եղբայր, | Երկիր | |
| 61 | Մկրտիչ Գարեգինեան | Արճէշ | 11 | — | ,, | Քեռկին, | Բայազէդ | |
| 62 | Արշալոյս Նազարեան | ,, | 9 | — | ,, | " | » | |
| 63 | Նազար Սողոմոնեան | Բեմ | 10 | — | ,, | Պապ, | Ն.-Բայազէդ | |
| 64 | Քիշմիշ Սողոմոնեան | Տափավանց | 8 | — | » | Պապ, | Բայազէդ | |
| 65 | Համաս Աբրահամեան | ,, | 6 | — | ոչ | — | — | |
| 66 | Ազատ Տիգրանեան | Վան | 7 | — | " | Քեռի, | Փաշաքենդ | |
| 67 | Փիրոզ " | ,, | 9 | — | այո | » | » | |
| 68 | Արամ Մխիթարեան | Մոկս | 9 | մայր | » | — | — | |
| 69 | Ջնգօ Յովհաննիսեան | Հարմեշան | 9 | — | » | Հօրեղբայր. | Երեւան | |
| 70 | Միհրան Գէորգեան | Բիթլիս | 13 | — | » | Եղբայր, | Ղարս | Մեկնած |
| 71 | Պետրոս Գէորգեան | ,, | 11 | — | " | — | — | |
| 72 | Պօղոս Պետրոսեան | ,, | 14 | — | » | Քոյր, | Ն.-Բայազէդ | |
| 73 | Կնեազ Մխակեան | ,, | 12 | մայր | » | — | — | |
| 74 | Եսթեր Եղոյեան | ,, | 9 | — | ոչ | Հօրեղբայր, | Նորադաղ | |
| 75 | Բենիամին " | ,, | 8 | — | " | » | » | |
| 76 | Սեդրաք Բողոյեան | Խերթն | 10 | մայր | այո | — | — | |
| 77 | Արամ Յարութիւնեան | Վան | 11 | » | » | — | — | |
| 78 | Վաղարշակ " | | 10 | » | " | — | — | |
| 79 | Վարդգէս Մկոյեան | Ոչխրանց | 10 | — | « | Եղբայր, | Բայազէդ | |
| 80 | Սահակ « | ,, | 7 | — | ոչ | " | » | |
| 81 | Բաղդասար « | ,, | 11 | — | ,, | » | » | |
| 82 | Սեդրաք Պօղոսեան | Բիթլիս | 10 | հայր | այո | — | — | |
| 83 | Ալմաստ « | ,, | 9 | » | ոչ | — | — | |
| 84 | Մարիամ Սափարեան | ,, | 10 | " | ,, | — | — | |
| 85 | Լեւոն " | ,, | 10 | — | այո | Հօրեղբայր, | Գեօղալդ. | |
| 86 | Երուանդ » | ,, | 11 | — | " | » | » | |
| 87 | Գասպար Ղազարեան | ,, | 6 | — | ոչ | " | Ծակքար | |
| 88 | Գէորգ Խաչիկեան | Զամալդին | 6 | — | " | " | Բայազէդ | |
| 89 | Սերոբ Ներսոյեան | Փաղաղեց. | 7 | — | » | Հօրեղբայր | " | |
| 90 | Յովսէփ Ճակոբեան | Վան | 9 | մայր | այո | — | — | |
| 91 | Գրիգոր Կարոյեան | Լաթար | 9 | = | ոչ | Քեռկին, | անորոշ տեղ | |
| 92 | Նուարդ Պօղոսեան | ,, | 14 | մայր | այո | — | — | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 93 | Ծաղիկ Պետրոսեան | Լաթար | 10 | — | » | Քեռի, | Բայազէդ |
| 94 | Անուշ Գէորգեան | » | 10 | — | » | " | " |
| 95 | Մարիամ » | » | 9 | մայր | " | — | — |
| 96 | Թաթոս » | » | 10 | « | » | — | — |
| 97 | Մարքուհի Խաչոյեան | Վան | 10 | — | ոչ | — | — |
| 98 | Վերգինէ Մինասեան | Բիթլիս | 10 | — | այո | Հօրեղբայր, | Պօղոսքեն. |
| 99 | Միսակ Յարութիւնեան | " | 6 | մայր | ոչ | — | — |
| 100 | Զանգաս » | » | 8 | " | » | — | — |
| 101 | Արշակ Մխիթարեան | » | 14 | « | այո | — | — |
| 102 | Կարապետ Միսակեան | » | 12 | « | » | — | — |
| 103 | Արմենակ » | » | 11 | « | » | — | — |
| 104 | Եղիշէ Քամալեան | " | 10 | — | ոչ | Եղբայր, | Բայազէդ |
| 105 | Միհրան Մուրադեան | " | 14 | մայր | այո | — | — |
| 106 | Սարգիս Մանուկեան | Աղչակերա | 12 | — | » | Հօրեղբայր, | Քաղկիկ |
| 107 | Բագրատ Նահապետեան | Ենչալու | 10 | մայր | » | — | — |
| 108 | Սահակ Գէորգեան | Մողրքենդ | 8 | — | ոչ | Հօրեղբայր, | անորոշ |
| 109 | Հաֆօ Մանուկեան | Նառն | 8 | մայր | ոչ | — | — |
| 110 | Սահակ Բաղդիեան | Գոմ | 8 | հայր | » | — | — |
| 111 | Հայաստան Մանասեան | Բլուրմակ | 7 | մայր | » | — | — |
| 112 | Արմէն Յովհաննիսեան | Խառնեց | 8 | — | այո | Քեռի, | Ղամարլու |
| 113 | Սիրան » | | 6 | — | ոչ | » | » |
| 114 | Հայկանուշ Մանուկեան | Խաչլու | 7 | — | » | Քեռի, | Երևան |
| 115 | Սինա Գասպարեան | Քեմ | 7 | — | » | Եղբայր, | Գեօլ |
| 116 | Նունուշ » | » | 8 | — | ոչ | » | » |
| 117 | Մարիամ Մուրադեան | Նորադուզ | 8 | մայր | » | — | — |
| 118 | Մովսէս Միսակեան | Փիրկարիր | 12 | » | այո | — | — |
| 119 | Միքայէլ " | " | 10 | » | » | — | — |
| 120 | Վարդան Մանասեան | Նոր գիւղ | 8 | — | ոչ | Եղբայր, | Աղխաման |
| 121 | Զումրութ Պետրոսեան | | 9 | մայր | » | — | — |
| 122 | Բաղդասար Մանուկեան | Հերինք | 15 | — | այո | Քոյր, | Քեօսահմեդ |
| 123 | Սեդրաք Սարգսեան | » | 15 | մայր | » | — | — |
| 124 | Աբրահամ Իսրայէլեան | Խոշգեալդի | 15 | » | » | — | — |
| 125 | Գեօզալ » | » | 13 | » | ոչ | — | — |
| 126 | Նատաշ Սահակեան | Օրդակլու | 11 | — | . | Մամ, | Օրդակլու |
| 127 | Մանեա Պետով | Բայազէդ | 10 | — | » | Հօրեղբայր, | Բայազէդ |
| 128 | Նատեա " | » | 5 | — | » | » | » |
| 129 | Նիւսա » | Բայազէդ | 3 | — | ոչ | Հօրեղբայր, | Բայազէդ |
| 130 | Կոլեա " | » | 1 | — | » | » | " |
| 131 | Վահան Պօղոսեան | Խակե | 14 | հայր | այո | — | — |
| 132 | Գեղամ Սարգիսեան | " | 15 | » | » | — | — |
| 133 | Արմենակ Յակոբեան | Ծղակ | 12 | — | » | Քոյր, | Արզանքենդ |
| 134 | Բենիամին Բենոյեան | » | 13 | մայր | » | — | — |
| 135 | Սերովբ " | » | 8 | » | ոչ | — | — |
| 136 | Բագալ Մկրտչեան | » | 10 | հայր | " | — | — |
| 137 | Ներսէս Յարութիւնեան | Խակե | 9 | մայր | » | — | — |
| 138 | Գեղամ Սարգսեան | » | 8 | " | " | — | — |
| 139 | Սամսոն Նազարեան | Ծղակ | 13 | » | այո | — | — |
| 140 | Երուանդ Մկրտչեան | Խակե | 9 | հայր | " | — | — |
| 141 | Արշակ Թովմասեան | Աղուանց | 10 | մայր | ոչ | — | — |
| 142 | Գէորգ Աւոյեան | Փրխուս | 8 | — | « | Քեռի, | Խանչալու |
| 143 | Լուսիկ Աւոյեան | » | 9 | — | » | Քենկին, | Եօնջալուղ |
| 144 | Խումար Խաչատուրեան | Մաշտակ | 11 | — | » | » | Երկիր |
| 145 | Եղիազար » | » | 6 | — | " | » | » |
| 146 | Ռեբեկա | » | 8 | — | » | » | " |
| 147 | Պօղոս Տէր-Յովսէփեան | Խակե | 12 | մայր | այո | — | — |
| 148 | Մանիշակ Տիգրանեան | Սեպ | 8 | — | ոչ | Հօրեղբայր, | Բայազէդ |
| 149 | Ոսկի Աւետիսեան | » | 12 | — | » | — | — |
| 150 | Մանուկ Երուանդեան | Խառակոն | 9 | մայր | այո | — | — |
| 151 | Կարապետ Յովհաննիսեան | Ոչխրանց | 10 | — | ոչ | » | Երկիր |